## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Մշակութային Միութեան Փարիզի Վարչութեան ժողովըստիպողաբար տեղի պիտի ունենայ այս Երկուշաբթի, ժամը 19ին, Մշակոյթի Տան Շաւարշ Միսաքեան սրահին մէջ: Վարչութեան անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

## ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարարէ թէ Հայկազեան վարժարանը վերաբացուած է: Ծանօթ ուսուցչուհի եւ մանկավարժուհի Օր. Ընծայ Ստեփանեան կը դասաւանդէ ամէն հինգշաբթի առաւօտ ժամը 9էն մինչեւ կէսօր, եւ կէսօրէ վերջ ժամը 14էն մինչեւ 16:

Նոյնպէս Կիրակի առաւօտները:

Կը յանձնարարուի Լիոնահայ ծնողքներէն փութով արձանագրել տալ իրենց զաւակները, ամէն օր դիմելով եկեղեցւոյ գրասենեակը ժամը 16էն մինչեւ 19:

## ՎԵՐԱՄՈՒՏ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղին դպրոցը կը վերաբացուի Հոկտեմբեր 5-ին, Ահարոնեան Ակումբը, 26 Րիւ տէ Քոնվալէսան: Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները արձանագրել: Ուսուցչուհի՝ Տիկին Հազարեան:

## ԾԱԽՈՒ ԵՆ

Հիւսելու մեքենաներ, ժօժ 12, 10 և 8:
Դիմել Արզումանեան,

7, Cité des Haydamilles,
Issy-les-Moulineaux
MIC. 81-05

## Կ'ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի հայ կին մը, երախայ մը նայելու եւ իրիկուան ճաշ պատրաստելու համար:
Հասցէ.— Արեւեան,

13, Rue Jean Poulmarch, Les Lilas
Métro : Mairie des Lilas.
VIL. 36-47

## ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Հոկտեմբեր 2ին, Երկուշաբթի կը վերսկսի հայերէնի դասընթացքը: Տարեկան միայն 10 Ն. Ֆ. Լիսէ Քոնտորսէի մէջ:

«Ասօսիասիոն Ֆիլոթէքնիք» որ հաստատուած է 25 տարիներէ ի վեր եւ ճանչցուած իբրեւ հանրօգուտ ձեռնարկ, հայերէն լեզուի եւս դասընթացք մը նըշանակած է իր ծրագրին մէջ:

Աշակերտները հոն արձանագրուելով այն առաւելութիւնը ունին որ օտար լեզուներու ալ կրնան հետեւիլ միեւնոյն վճարումով:

Ուսուցչուհին է Տիկին Աարինէ Ջիթունի:

Արձանագրուելու համար դիմել՝

47, Rue St - André - des Arts
Métro : St-Michel ou Odéon.
Երկուշաբթի՝ ժամը 17·30 – 19·30:
Շաբաթ՝ ժամը 14 – 16:
Ուրբաթ՝ ժամը 18 – 19:

## Կ'ՈՒԶՈՒԻ

Երիտասարդ մը 20 – 35 տարեկան, իբրեւ վաճառորդ (վանտէօր) կերպասի վաճառատան համար:

Օգնական տղայ մը 15 – 20 տարեկան նոյն վաճառատան համար:

Դիմել՝

Etbs AGEDER
67, Rue de Cléry, Paris 2e

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՔԵՌԻ (Էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր – ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները:

## ՎԵՐԱՄՈՒՏ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս եկեղեցւոյ Թաղ. խորհուրդը եւ նորակազմ Կրթ. մարմինը Թաղիս եւ շրջաններուն բոլոր ծնողքներուն կը յայտարարեն թէ մայրենի լեզուի ուսման համար դասաւանդութիւնները կ'սկսին Հինգշաբթի 5 Հոկտեմբեր կէսօրէ վերջ ժամը 2ին, եկեղեցւոյ խորհրդարանի մէջ, արձանագրութիւնները Կիրակի առաւօտները եկեղեցւոյ խորհրդարանը:

## ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Պօմոնի մասնաճիւղի վարժարանին վերաբացումը պիտի կատարուի՝ Հոկտեմբեր 5ին, Հինգշաբթի առաւօտ, ժամը 9ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:

Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ ուսուցիչ Պ. Վահրամ Մխիթիքի կողմէ:

Վարչութիւնը կը խնդրէ յարգելի ծնողքներէն որ նկատի ունենան վերոյիշեալ թուականը եւ անյապաղ արձանագրել տան իրենց զաւակները, եւ նորեր ալ, յանուն մատաղ սերունդի ազգ. դաստիարակութեան:



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կը տօնուի Շաբաթ իրիկուն, Հոկտեմբեր 7, ժամը 20·30էն մինչեւ առաւօտ, 6րդ թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ:

**Place St-Sulpice (Métro : St-Sulpice)**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Խօսք կ'առնէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի ներկայացուցիչը:

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ.—

Կը մասնակցին.— ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ եւ ՍՈՒՐԷՆ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ (երգ), ԱՐԱ ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն), ԻՌԷՆ ՖԱՐՇԻԵԱՆ (ձայն – պատկեր – րասփիւռի երաժշտութեան, Ազգային Մրցումին Ա. մրցանակ եւ Ռոյանի արծաթեայ բաժակին մրցանակաւոր), Օր. ԹԱՌՕՆ (պար), ՀՆԳԵԱԿ ղեկավարութեամբ Պ. Ա. ՄԵՍՈՒՄԵՆՑԻ:

ԿԷՍ ԳԻՇԵՐԷՆ ՍԿՍԵԱԼ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

**ROBERTO SÉTO**

նուագախումբով:

Խօսնակ՝ ԸՆԿ. ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Ձոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով | ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

## ԺԱՆ ՏԷՐ - ՄԷՐԿԵՐԵԱՆԻ

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Այս Երկուշաբթի իրիկուն, ժամը 21ին

ԺԻՄՆԱԶԻ ԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

**Rue du Théâtre-Français** (Քանըպիէրի վրայ)

Մարկրիթ – Լոն – Ժագ Թիպօ 1961 միջազգային մրցումին մէջ վերջերս առաջին մրցանակի արժանացած ջութակի վիրթիւոզ Ժան Տէր – Մերկերեան Մարսէյլի հայ գաղութին կողմէ հրաւիրուած ըլլալով, այս շաբթու վերջ պիտի տայ ջութակի «ռեսիթալ»մը, որուն կազմակերպութիւնը ստանձնած է Հայ – Ֆրանսական Յանձնախումբ մը:

Տոմսերը ապահովել Յանձնախումբէն:



## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

### ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ

### ՏԱՐԵԿԱՆ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՎԱՃԱՌՔԸ

Շաբաթ, Դեկտեմբեր 2էն, Կիրակի, իրիկուն Դեկտեմբեր 10

Այս տարի, յաւելեալ նոր բաժին մը՝

### ՔՈՒՏ ՀԱՅԿԱԿԱՆ

Ուր պիտի ներկայացուին հայ արուեստագէտներու զանազան գործերը:

Պ. Սեդրակ Գազազեան, Այրի Տիկին Ա. Խանճեան, Տէր եւ Տիկ. Կարպիս Գազազեան եւ զաւակը, Պ. Արման Խանճեան, Տէր եւ Տիկին Գալճեան եւ զաւակը, Պ. Գառնիկ Գազազեան, Այրի Տիկ. Կ. Գազազեան, ինչպէս նաեւ Գույումճեան, Փէշտիմալճեան, Հէքիմեան եւ Ալթունեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, քրոջ, մօրաքրոջ, հարսին եւ ազգականին՝

ՏԻԿԻՆ ԱՐՈՒՍԵԱԿ Խ. ԳԱԶԱԶԵԱՆԻ
(Ծնեալ Յակոբեան)

մահը, որ տեղի ունեցաւ Սեպտեմբեր 30-ին, 86 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Չորեքշաբթի ժամը 14-ին Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Մոնփառնասի գերեզմանատունը, ամփոփուելու համար իր ընտանեկան դամբարանին մէջ:

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայ իբրեւ այդ նկատել:

ՅԱՌԱՋ. — Մեր ցաւակցութիւնները Գազազեան եղբայրներուն:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Լակառէնէն Տէր եւ Տիկին Եղնիկեան եւ Տէր եւ Տիկին Գափուճեան քսանական Ն. Ֆ. կը նուիրեն Սողոմոն Թէհլիրեան սրահին, փոխան ծաղկեպսակի ողբացեալ Պ. Տրդատ Հիմինեանի մահուան առթիւ: (Ստանալ «Յառաջ»էն):

×

Ալֆորվիլէն Տէր եւ Տիկին Յովհաննէս եւ Արաքսի Սիմոնեան իրենց ամուսնութեան 25ամեակին առթիւ կը նուիրեն դաշնակ մը, Սողոմոն Թէհլիրեան սրահին»:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Մարսէյլի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Շամլըեանէ քսան Ն. Ֆ. իրենց սիրեցեալ եղբօր, Գրիգոր Մանուկեանի մահուան առթիւ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Սրբուհի Լոռէնեան (Տըրակլնեան) եւ իր զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ողբացեալ ամուսնոյն, եղբօր եւ հօր, ողբացեալ՝ ԳՐԻԳՈՐ ԼՈՌԷՆԵԱՆԻ (Պոլսեցի) եւ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՄԻՐԱՆԵԱՆԻ (Նիկոմիտիացի), մահուան քառասունքին առթիւ, այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ:

Կը հրաւիրուին անոնց յիշատակը յարգողները:

×

Այս առթիւ Այրի Տիկին Սրբուհի Լոռէնեան հետեւեալ նուիրատուութիւնները կ'ընէ.—

«Յառաջ»ի բարգաւաճման 50 Ն. Ֆ. Փարիզի եկեղեցւոյն յիսուն, Եկեղեցւոյն կրթ. ձեռնարկներուն վաթսուն, Աղքատախնամի ծերանոցներուն 50, Բլամաի աղէտեալներուն յիսուն, Մշակոյթի Տան երեսուն Ն. Ֆ.:

Ստանալ այս գումարները Փարիզի եկեղեցւոյ դիւանատունէն: (Մշակոյթի Տան նուէրը ստանալ «Յառաջ»էն):

## ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Լիոնի Ազգ. Միութիւնը կը յայտարարէ թէ Հայկազեան վարժարանը վերաբացուած է: Մանօթ ուսուցչուհի եւ մանկավարժուհի Օր. Ընծայ Ստեփանեան կը դասաւանդէ ամէն հինգշաբթի առաւօտ ժամը 9էն մինչեւ կէսօր, եւ կէսօրէ վերջ ժամը 14էն մինչեւ 16:

Նոյնպէս Կիրակի առաւօտները:

Կը յանձնարարուի Լիոնահայ ծնողքներէն փութով արձանագրել տալ իրենց զաւակները, ամէն օր դիմելով եկեղեցւոյ գրասենեակը ժամը 16էն մինչեւ 19:

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերը.—

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՔԵՌԻ (Լէքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր – ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի և վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը
Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ:
Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին:

## ՎԵՐԱՄՈՒՏ

Վիէնի Կապ. Խաչի երեք դպրոցներու վերաբացումը այսօր Երեքշաբթի իրիկուն, ժամը 7.30ին, առաջին առթիւ ըսկսելով Փոնթէվէքի Թաղէն:

Յաջորդաբար, հայերէնի դասընթացքները կը սկսին, Չորեքշաբթի իրիկուն Փասքալի Թաղը եւ Հինգշաբթի կէսօրէն ետք Համօ Օհանջանեան ակումբին մէջ:

Ուսուցիչ Պ. Կ. Տէրմոյեան:

## ՎԵՐԱՄՈՒՏ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղին դպրոցը կը վերաբացուի Հոկտեմբեր 5-ին, Ահարոնեան Ակումբը, 26 Rue de Convalescents: Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները արձանագրել: Ուսուցչուհի՝ Տիկին Հազարեան:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տիկին Արուսեակ Մալաթեան (ծնեալ Մարտիրոսեան, Զարաթցի), Ամերիկայէն, հօրը անունը՝ Մարտիրոս, մօրը՝ Աննա, կը փնտռէ կնքամօր աղջիկը՝ Սաթենիկ Վարդանեան, որուն վերջին հասցէն Փարիզ էր: Հօրը անունը՝ Վարդան, մօրը՝ Պայծառ, հօրեղբայրները՝ Միրիճան, Օննիկ, Ռաշթիկ: Մօտաւորապէս 67 տարեկան, միասին դպրոց գացած են Պոլիս: Տեղեկացնել՝ Պ. Ժօզէֆ Թոմասեանի,

12 Պուլվ. Լամպէր, Մարսէյլ:




Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հարուստ Գարակէօզեան Հոմի նախ – կին Սանուց Միութիւնը կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ազ – գային բարերար՝

ՄԻՀՐԱՆ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆԻ

հոգւոյն ի յիշատակ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատա – կը յարգողները :

×

Պ. Ալեքսան Նուրեան եւ զաւակը Տա – նիէլ, Տէր եւ Տիկին Տիգրան Թորոսեան եւ զաւակը կը ծանուցանեն թէ հոգե – հանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց կնոջ, մօր եւ մեծ մօր՝

ԱՏՐԻՆԷ ՆՈՒՐԵԱՆԻ

(Ծնեալ Խտըշեան)

մահուան տարելիցին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

×

Այրի Տիկին Սրբուհի Լոռէնեան (Տը – րակինեան) եւ իր զաւակները կը ծանու – ցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պի – տի կատարուի իրենց ողբացեալ ամուս – նոյն, եղբօր եւ հօր, ողբացեալ՝ ԳՐԻԳՈՐ ԼՈՌԷՆԵԱՆԻ (Պոլսեցի) եւ ՅԱ – ՐՈՒԹԻՒՆ ՄԻՐԱՆԵԱՆԻ (Նիկոմիտիա – ցի), մահուան քառասունքին առթիւ, այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկե – ղեցւոյն մէջ :

Կը հրաւիրուին անոնց յիշատակը յար – գողները :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Պանեէօ Քաչանի մասնա – ճիւղի վարչութիւնը խորին շնորհակա – լութիւններ կը յայտնէ իր ընկերուհինե – րուն եւ այն բոլոր հայրենակիցներուն, որոնք սիրայօժար մասնակցեցան, ի նը – պաստ Քլամար – Իսսի աղէտեալներու բացառիկ հանգանակութեան, որպէս մարդասիրական պարտականութիւն : Ար – դիւնքը վաթսուն հազար հին ֆր. իր ա – տենին լրիւ յանձնուեցաւ Պանեէօյի քա – ղաքապետ Պ. Ալպեր Փըթիի, փոխանցե – լու համար առ որ անկ է :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին :

ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 21ին :

×

Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ :

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ : Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Հայկազեան վարժարանի հայերէնի դասերը տեղի կ'ունենան ամէն հինգշաբ – թի ժամը 2–6, Ազգային Տան մէջ, (32, Րիւ տը Թրէվիզ) :



## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ըն – կերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ: Շատ կարեւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խում – բերը .—

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

ՔԵՌԻ (Լէքս) խումբ, 15 Հոկտ., Կիրա – կի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները : Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր – ընկերուհիներու ներկայութիւնը պար – տաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհինե – րուն տեղեկացնեն ժողովներու թուակա – նի և վայրի մասին : Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ օր, ժամը 4ին, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան մէջ:

ԹՈՔԱՏԻ Հայր. Միութեան ընդհ. ժո – ղովը այս Կիրակի, ժամը 16ին, սովորա – կան հաւաքատեղին :

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Վա – լանսի մասնաճիւղի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները եւ հայ – րենակիցները այս Շաբաթ, ժամը 21ին, Պ. Սիմոնեանի սրճարանը : Օրակարգ՝ Պատգամաւորական ժողովի տեղեկագրի ընթերցում, նոր վարչութեան ընտրու – թիւն եւ ընթացիք հարցեր :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Երիտասարդ ուսանողուհիի մը համար, սենեակ մը, ի հարկին խոհանոցի դիւ – րութեամբ: Դիմել «Յառաջ»ին :

## ՎԵՐԱՄՈՒՏ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի մասնաճիւղին դպրոցի վերաբացումը՝ այս Կիրակի առաւօտ ժա – մը 9էն սկսեալ: Ծնողքներէն կը խնդրուի արձանագրել տալ իրենց զաւակները :

ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ԱՄՍԱԳԼԽՈՒՆ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ՆՈՐ ՇՐՋԱՆ

Մինչեւ ամսագլուխ՝ բաժանորդները կը ստանան ՀԱՅ – ԲՈՅԺի 229 – 230րդ թիւը, հետեւեալ ճոխ եւ չահեկան բո – վանդակութեամբ .—

Նիւչէ մեռաւ խենթութեան մէջ (Հայ – Բոյժ) .— Ծոմապահութիւն (Տոքթ. Գ. Ալթունեան) .— Երբ աչքերը չեն զոր – ծեր (Տոքթ. Փօլ տը Պօէսի) .— Վիշա – պածառ (Յ. Իշխանեան) .— Դարձեալ խլիրդ (Քաղհան) .— Հեռաձայնով խօ – սողներու հիւանդութիւն (Տոքթ. Աշ – ճեան) .— Հայերը հնարած են զարեջու – րը (Յովհ. Պապէսեան) .— «Բժիշկ» մե – քենաներ (Փրոֆ. Պարին) .— Ուղեղը հրաշակերտ գործիք (Տոքթ. Գալուստ – եան) .— Ի՞նչպէս կը մեծնայ երախան (Տոքթ. Մարի Շիրլի) .— Ի՞նչպէս լող – ցնել երախան (Մ. Աղաւելեան) .— Երե – ւանի ձեռագրատունը (Ա. Աղայեան) .— Հայկական կերակուրները (Տոքթ. Շ. Այվազեան) . — Ջաւակագործութիւն՝ ըստ արհեստի (Տոքթ. Պանծալի) . — Ի՞նչպէս կերակրել երախան (Տոքթ. Մա – րի Փարմանթիէ) :

ՄԱՄՈՒԼԻ տակ է 231 – 233րդ թիւը :

Անհրաժեշտ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը: Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ :

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կը տօնուի Շաբաթ իրիկուն, Հոկտեմբեր 7, ժամը 20·30էն մինչեւ առաւօտ Երդ թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ :

**Place St-Sulpice (Métro : St-Sulpice)**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Խօսք կ'առնէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի ներկայացուցիչը :

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ .—

Կը մասնակցին .— ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ եւ ՍՈՒՐԷՆ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ (երգ), ԱՐԱ ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն), ԻՌԷՆ ՖԱՐՇԻԵԱՆ (ձայն – պատկե – րասփիւռի երաժշտութեան, Ազգային Մրցումին Ա. մրցանակ եւ Ռօյանի արծաթ – եայ բաժակին մրցանակաւոր), Օր. ԹԱՌՕՆ (պար), ՀՆԳԵԱԿ ղեկավարութեամբ Պ. Ա. ՄԵՍՈՒՄԵՆՑԻ :

ԿԷՍ ԳԻՇԵՐԷՆ ՍԿՍԵԱԼ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

**ROBERTO SÉTO**

նուագախումբով :

Խօսնակ՝ ԸՆԿ. ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

# ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

Այս Կիրակի, ժամը 16էն 24

Salle des Fêtes, Rue Voltaire, Alfortville

Գեղարուեստական բաժին .

Orchestre TEB-LYRO et sa grande formation typique et Tango

Պիւֆէ ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

# ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

GEORGE V, 31, Ave, George V, PARIS

Եղանակին առաջին պարահանդէսը

Զանազան անակնկալներ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

1.— ՍՕՍԻ պարախումբը, հայկական եւ ռուսական պարերով, ղեկավարու – թեամբ Տիկ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ եւ առաջնորդութեամբ ՏԷՏԷՃԵԱՆ նուագա – խումբի :

2.— Պ. ՓԱՊԼԻԹՈՑԻ սպանական պարի կազմը

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝ JEAN CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասեն – եակը : ՓՐՕվանս 77–73 ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Յ. Գասպարեանէ քան Ն. Ֆ. իրենց աղջկան Մատլէնի ամուսնութեան եւ ընկերուհի Ա. Ալթունեանէ ափսէ մը Թերթանոյշ դաշտահանդէսին առթիւ :

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Պ. Ճ. Պահատուրեանէ յիսուն Ն. Ֆ., փոխան ծաղկեպսակի, երիտասարդ Արթին Գազօրեանի ղառնաղէտ մահուան առթիւ:

## ՆՈՒԷՐ

Այրի Տիկին Վերգինէ Փափազեան իր ամուսնոյն Լեւոն Փափազեանի մահուան առթիւ, քան Ն. Ֆ. կը նուիրէ եկեղեցիին եւ երեսուն Ն. Ֆ. Ազքատախնամին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հարուստ Գարակէօզեան Հոմի նախկին Սանուց Միութիւնը կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, աղգային բարերար՝

ՄԻՀՐԱՆ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆԻ

հոգւոյն ի յիշատակ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

×

Պ. Ալեքսան Նուրեան եւ զաւակը Տանիէլ, Տէր եւ Տիկին Տիգրան Թորոսեան եւ զաւակը կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց կնոջ, մօր եւ մեծ մօր՝

ԱՏՐԻՆԷ ՆՈՒՐԵԱՆԻ

(Ծնեալ Խտրշեան)

մահուան տարելիցին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ, այս Կիրակի առաւօտ ժամը 8·30ին պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ: Կը պատարագէ եւ կը քարոզէ Տէր Վարագ քհնյ. Աւագեան:

Տէր եւ Տիկին Յովսէփ Մալոյեան եւ զաւակները հոգեհանգստեան պաշտօն կը խնդրեն իրենց զաւկին Վարդան Մալոյեանի վաղահաս մահուան քառասունքին առթիւ, ինչպէս նաեւ Մալոյեան համայն ննջեցելոց:

Կը հրաւիրուին բարեպաշտ ժողովուրդը, եւ հանգուցեալին յիշատակը յարգողները:

## ՎԵՐԱՄՈՒՏ

Հայկազեան վարժարանի հայերէնի դասերը տեղի կ'ունենան ամէն հինգշաբթի ժամը 2–6, Ազգային Տան մէջ, (32, Րիւ տը Թրէվիզ):



## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ: Շատ կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերը.—

ՆԻԿՈՂ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՔԵՌԻ (էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր – ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները:

## ՎԵՐԱՄՈՒՏ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի մասնաճիւղին դպրոցի վերաբացումը՝ այս Կիրակի առաւօտ ժամը 9էն սկսեալ: Ծնողքներէն կը խնդրուի արձանագրել տալ իրենց զաւակները:



ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ԱՄՍԱԳԼԽՈՒՆ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

—o—

ՆՈՐ ՇՐՋԱՆ

Մինչեւ ամսագլուխ՝ բաժանորդները կը ստանան ՀԱՅ – ԲՈՅԺի 229 – 230րդ թիւը, հետեւեալ ճոխ եւ շահեկան բովանդակութեամբ.—

Նիւցչէ մեռաւ խենթութեան մէջ (Հայ – Բոյժ).— Ծոմապահութիւն (Տոքթ. Գ. Ալթունեան).— Երբ աղիքները չեն գործեր (Տոքթ. Փօլ տը Պօէսի).— Վիշապածառ (Յ. Իշխանեան).— Դարձեալ խլիրդ (Քաղիան).— Հեռաձայնով խօսողներու հիւանդութիւն (Տոքթ. Աշեան).— Հայերը հնարած են դարեջուրը (Յովի. Պապէսեան).— «Բժիշկ» մեքենաներ (Փրոֆ. Պարին).— Ուղեղը՝ հրաշակերտ գործիք (Տոքթ. Գալուստեան).— Ի՞նչպէս կը մեծնայ երախան (Տոքթ. Մառի Շիրլի).— Ի՞նչպէս լոգցնել երախան (Մ. Աղաւելեան).— Երեւանի ձեռագրատունը (Ա. Աղայեան).— Հայկական կերակուրները (Տոքթ. Շ. Այվազեան). — Զաւակագործութիւն՝ ըստ արհեստի (Տոքթ. Պանծալի). — Ի՞նչպէս կերակրել երախան (Տոքթ. Մառի Փարմանթիէ):

ՄԱՄՈՒԼԻ տակ է 231 – 233րդ թիւը:

Անհրաժեշտ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը: Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ:

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կը տօնուի Շաբաթ իրիկուն, Հոկտեմբեր 7, ժամը 20·30էն մինչեւ առաւօտ Ճրդ. թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ:

**Place St-Sulpice (Métro : St-Sulpice)**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Խօսք կ'առնէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի ներկայացուցիչը:

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ.—

Կը մասնակցին.— ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ եւ ՍՈՒՐԷՆ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ (երգ), ԱՐԱ ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն), ԻՌԷՆ ՖԱՐՇԻԵԱՆ (ձայն – պատկերասփիւռի երաժշտութեան, Ազգային Մրցումին Ա. մրցանակ եւ Ռոյանի արծաթեայ բաժակին մրցանակաւոր), Օր. ԹԱՌՕՆ (պար), ՀՆԴԵԱԿ ղեկավարութեամբ Պ. Ա. ՄԵՍՈՒՄԵՆՑԻ:

ԿԷՍ ԳԻՇԵՐԷՆ ՍԿՍԵԱԼ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

**ROBERTO SÉTO**

նուագախումբով:

Խօսնակ՝ ԸՆԿ. ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով — ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

Այս Կիրակի, ժամը 16էն 24

Salle des Fêtes. Rue Voltaire. Alfortville

Գեղարուեստական բաժին.

Orchestre TEB-LYRO et sa grande formation typique et Tango

ՊԻՒՖԷ — ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին:
ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 21ին:

×

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ:

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը

Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ: Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ օր, ժամը 4ին, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան մէջ:

ԹՈՔԱՏԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի, ժամը 16ին, սովորական հաւաքատեղին:

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները եւ համակիրները այս Շաբաթ, ժամը 21ին, Պ. Սիմոնեանի սրճարանը: Օրակարգ՝ Պատգամաւորական ժողովի տեղեկագրի ընթերցում, նոր վարչութեան ընտրութիւն եւ ընթացիք հարցեր:

### ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Օր. ԼՈՒԻԶ ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ
Պ. ԷԴՈՒԱՐԴ ՍԱՊՈՒՆՃԵԱՆ
Նշանուած

ՄԱՐՍԷՅԼ 24 Սեպտ. 1961 ՓԱՐԻԶ

Այս առթիւ կը նուիրեն.— 30 Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման, 30 Ն. Ֆ. «Հայ – Բոյժ»ին :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Պօմոնի Ս. Սահակ – Մեսրոպ սրահին մէջ, Նոյեմբեր չորսին, Շաբաթ երեկոյեան ժամը 9ին, մեծ պատրաստութեամբ եւ գեղարուեստական շատ խնամեալ բաժինով մը, տեղի պիտի ունենան բանախօսութիւն, նուագ, երգ, արտասանութիւն եւ խումբական պարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ :

Մանրամասնութիւնները յաջորդիւ :

### ՆՈՒԷՐ

Ողբ. Աւետիս Գալիկեանի կսկծալի մահուան առթիւ Վիէնէն Տիկին Երանիկ Օվանովիկ, փոխան ծաղկեպսակի կը նուիրէ 10 Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ալֆորվիլի Ս. Պ. Պ. եկեղեցւոյ հոգաբարձութիւնը պարք կը համարի եկեղեցւոյս բարերար Պ. Արմենակ Համբարձումեանի ընտանիքին եւ պարագաներուն համար պատարագ եւ հոգեհանգիստ կատարել տալ այս Կիրակի :

Կը խնդրուի Համբարձումեան գերդաստանի յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ պատարագի արարողութեան :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Շրջ. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է ձեռամբ Տիկ. Գարոյեանի վաթսուն Ն. Ֆ., բարեսէր տիկինէ մը, ի յիշատակ իր սիրելի ծնողաց :

×

Որբերու Օգն. մարմինը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Արմենակ Համբարձումեանէ հարիւր Ն. Ֆ., Լեւոն Փափազեանի յուղարկաւորութեան առթիւ :

### ԱՌԱՆՁԻՆ ԴԱՍԵՐ

Յարութիւն Թորոսեան տրամադրելի պահեր ունի հայերէնի եւ գծագրութեան առանձին դասեր տալու :

Պայմաններուն տեղեկանալու համար գրել՝ 57 Պուլվ. Ժուռտան, Փարիզ (14) : Հեռ. ԿՈՊըլէն 31–53 :

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

### Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ : Շատ կարեւոր օրակարգ :

ՊԱՆԵՕ ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Երեքշաբթի, ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերը.—

ՆԻԿՈԼ – ԴՈՒՄԱՆ խումբ, 8 Հոկտ. Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

ՔԵՌԻ (էքս) խումբ, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին :

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները : Շատ կարեւոր օրակարգ : Բոլոր ընկեր – ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է : Վարչութիւնները պէտք է նախապէս բոլոր ընկեր – ընկերուհիներուն տեղեկացնեն ժողովներու թուականի եւ վայրի մասին : Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները :



# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կը տօնուի Շաբաթ իրիկուն, Հոկտեմբեր 7, ժամը 20·30էն մինչեւ առաւօտ 6րդ թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ :

**Place St-Sulpice (Métro : St-Sulpice)**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Խօսք կ'առնէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի ներկայացուցիչը :

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄ ՈՒԱԾ ԲԱԺԻՆ.—

Կը մասնակցին.— ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ եւ ՍՈՒՐԷՆ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ (երգ), ԱՐԱ ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն), ԻՌԷՆ ՖԱՐՇԻԵԱՆ (ձայն – պատկերասփիւռի երաժշտութեան, Ազգային Մրցումին Ա. մրցանակ եւ Ռօյանի արծաթեայ բաժակին մրցանակաւոր), Օր. ԹԱՌՕՆ (պար), ՀՆԳԵԱԿ ղեկավարութեամբ Պ. Ա. ՄԵՍՈՒՄԵՆՑԻ :

ԿԷՍ ԳԻՇԵՐԷՆ ՍԿՍԵԱԼ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

**ROBERTO SÉTO**

նուագախումբով :

Խօսնակ՝ ԸՆԿ. ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով — ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

Այս Կիրակի, ժամը 16էն 24

Salle des Fêtes, Rue Voltaire, Alfortville

Գեղարուեստական բաժին.

Orchestre TEB-LYRO et sa grande formation typique et Tango

ՊԻՒՖԷ — ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

### ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ, այս Կիրակի առաւօտ ժամը 8·30ին պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ : Կը պատարագէ եւ կը քարոզէ Տէր Վարագ քհնյ. Աւագեան :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին :
ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 21ին :

×

Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝
ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ
Լիւթէսիայի մէջ :

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը
Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ : Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին :

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ օր, ժամը 4ին, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան մէջ :

ԹՈՔԱՍԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի, ժամը 16ին, սովորական հաւաքատեղին :

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները եւ համբեռնակիցները այս Շաբաթ, ժամը 21ին, Պ. Սիմոնեանի սրճարանը : Օրակարգ՝ Պատգամաւորական ժողովի տեղեկագրի ընթերցում, նոր վարչութեան ընտրութիւն եւ ընթացիկ հարցեր :

### ՎԵՐԱՄՈՒՏ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի մասնաճիւղին դպրոցի վերաբացումը՝ այս Կիրակի առաւօտ ժամը 9էն սկսեալ : Ծնողքներէն կը խնդրուի արձանագրել տալ իրենց զաւակները :

Այրի Տիկին Խըտըչեան, Տէր եւ Տիկին Արթիւր Խըտըչեան, Տէր եւ Տիկին Աշոտ Սէրճանեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Լօրան տը Շուքասի եւ աղջիկը, Պ. Կրեկուար Նարլեան, Այրի Տիկին Թամուրեան, Պ. Քտուար Թամուրեան, Այրի Տիկին Ըէխեան, Այրի Տիկին Եաւրուեան, Տէր եւ Տիկին Զիլքան, Այրի Տիկին Փըրիքեան, ինչպէս նաեւ Խըտըչեան, Սէրճանեան, Վարդանեան, Գարայեան եւ Շուքասի ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, մեծ մօր մայրիկին եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՆԱՐԼԵԱՆԻ
(Ծնեալ Թամուրեան)

մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 3-ին, 82 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Երկուշաբթի ժամը 14ին Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ ուրկէ մարմինը պիտի փոխադրուի, ժամը 15·30ին, Ժուէնվիլի գերեզմանատունը, ամփոփուելու համար իր ընտանեկան դամբարանը:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՆՈՒԷՐ

Պ. Գրիգոր Գավչեան եւ զաւակները իրենց կնոջ եւ մօր՝

ԶԱՊԷԼ ԳԱՎՃԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ 50 Ն. Ֆ. կը նուիրեն Հանգստեան տուներուն: (Ստանալ «Յառաջ»էն):

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼԻ մէջ Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Հոկտեմբեր 28ին, Շաբաթ գիշեր, ժամը 21էն մինչեւ լոյս, «Ալհամպրա»ի սրահներուն մէջ, աննախընթաց պատրաստութեամբ:

Մարսիլիահայ կազմակերպութիւններէն կը խնդրուի չխաչաձեւել:

×

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ երեկուն, Րիւ տիւ Նուառի սրահը:

ԱԶԴ ՏՈՒՈՂՆԵՐՈՒ
ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ չտան:

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ընդունի:

ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Շէք - Փօսթալի թիւն է.—
C. C. P. PARIS 5460-11

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Պօմոնի Ս. Սահակ - Մեսրոպ սրահին մէջ, Նոյեմբեր չորսին, Շաբաթ երեկոյեան ժամը 9ին, մեծ պատրաստութեամբ եւ գեղարուեստական շատ խնամեալ բաժինով մը, տեղի պիտի ունենան բանախօսութիւն, նուագ, երգ, արտասանութիւն եւ խմբական պարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ:

Մանրամասնութիւնները յաջորդով:

Կ. ՓՈԼԱՏԵԱՆ

ՁՐՈՅՑ

Սէն - Ճոն Փէրսի (Նոպելեան մրցանակ)
Հայր Ներսէս Ակինեանի
Անտրէ Ռուսոյի
Կոստան Զարեանի
Սիմոն Վրացեանի հետ

Շատ հետաքրքրական հատոր մը զոր պիտի կարդաք հաճոյքով:

Ստանալու համար դիմել Փարիզի հայ գրավաճառներուն կամ ուղղակի հեղինակին՝

G. POLADIAN
53, Avenue de t-Julien
Marseille - 12e

Գին՝ Թղթակազմ 5 Ն. Ֆ., Լաթակազմ 7·50 Ն. Ֆ.:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

ՇԱՀԱՆ
ՇԱՀՆՈՒՐ

ՆԱՀԱՆՋԸ ԱՌԱՆՑ ԵՐԳԻ

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋԻՆ

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՊԱՆԵՕ ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Երեքշաբթի, ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ.—

ՔԵՌԻ (Էքս) խումբը, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին:
ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 21ին:

×

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ:

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ: Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին:

ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ | | |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ | | |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » | » | » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » | » | » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » | » | » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » | » | » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » | » | » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » | » | » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » | » | » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:





Տէր եւ Տիկին Մերանկիւլեան, Տէր եւ Տիկին Սայլանճեան, Տէր եւ Տիկին Ին–ճէյեան, Տէր եւ Տիկին Մ. Աչճեան ցաւով կը ծանուցանեն իրենց եղբօր եւ ազգականին՝

ԱՇՈՏ ՄԵՐԱՆԿԻՒԼԵԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 5ին, յետ երկարատեւ հիւանդութեան, Պօժոնի հիւանդանոցը։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր, Երեքշաբթի առաւօտ ժամը 11ին, Փանթէնի գերեզմանատունը։

Մահազդ դրկուած չըլլալով, կը խնդ–րուի ներկայս իբրեւ այդ նկատել։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՀԱՃՆՈՅ ԳՈՅԱՄԱՐՏԻ 41ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՒ ՓԱՐԻԶ

Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան նախաձեռնութեամբ Հաճնոյ հերոսա–մարտի 41րդ տարեդարձի առթիւ, ուր Հազար դիւցազներու ննջեցելոց, հոգե–հանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցւոյ մէջ։ Այս կի–րակի առաւօտ։ Կը հրաւիրուին հայրե–նակիցները եւ անոնց յիշատակը յարգող–ները, յետ պատարագի մատաղ եւ յու–շահանդէս Մշակութային Տան մէջ, 17, Րիւ Պլէօ։

×

ՇԱՄԻ ՄԷՋ.— Հաճընի Հայր. Ընդհ. Միութիւնը «Արծուաբոյն»ի հերոսամար–տին 41րդ տարեդարձը կը տօնուի այս Կիրակի։ Տէսինի հոգեւոր հովիւ Տէր Վարազ քհնյ. Աւագեան հոգեհանգստեան հանդիսաւոր պատարագ պիտի մատու–ցանէ, ուր Հազար նահատակներու յիշա–տակին եւ պիտի քարոզէ։ Աւանդական հոգեճաշ նահատակներու հոգւոյն։

Կը հրաւիրուին շրջանի բոլոր հայրե–նակիցները եւ նահատակներուն յիշատա–կը յարգողները։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապոյտ Խաչի Վիէնի վարչութիւնը եւ բոլոր ընկերուհիները իրենց խորին եւ զգածուած ցաւակցութիւնները կը յայտ–նեն ընկերուհի Արտեմիս Ագպըյըգեանի, իր զաւակներուն եւ ընտանեկան պարա–գաներուն, իրենց ամուսնոյն, հօր եւ ազ–գականին՝ Պ. Օննիկ Ագպըյըգեանի ա–նակնկալ եւ կսկծալի մահուան առթիւ։

Այս տխուր առթիւ, փոխան ծաղկեպը–սակի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ դրամական նուէր–ները.— Այրի Տիկին Արտեմիս Ագպըյըգ–եանէ եւ զաւակներէն յիսուն Ն. Ֆ.։ Տէր եւ Տիկին Ճ. Պահատուրեանէ 25, Տէր եւ Տիկին Վ. Թորամանեանէ 10, Տէր եւ Տիկին Մինասեանէ տասը, Տէր եւ Տիկ. Արսէն Տէր Զաքարեանէ եւ զաւակներէն տասը, Յ. Նազար Նազարեանէ տասը

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Պոմոնի Ս. Սահակ – Մեսրոպ սրահին մէջ, Նոյեմ–բեր չորսին, Շաբաթ երեկոյեան ժամը 9ին, մեծ պատրաստութեամբ եւ գեղար–ուեստական շատ խնամեալ բաժինով մը, տեղի պիտի ունենան բանախօսութիւն, նուագ, երգ, արտասանութիւն եւ խըմ–բական պարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ։

Մանրամասնութիւնները յաջորդով։

×

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին։

ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 22ին։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Արտեմիս Ագպըյըգեանի, զաւակներուն եւ ընտանեկան բոլոր պա–րագաներուն, իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝ Պ. ՕՆՆԻԿ ԱԳՊԸՅԸԳԵԱՆԻ (պատուոյ նախագահ Հ. Մ. Ը. Մ.ի) ա–նակնկալ եւ դառնակսկիծ մահուան առ–թիւ։

×

Այս տխուր առթիւ եւ փոխան ծաղկե–պսակի, Հ. Մ. Ը. Մ.ի վարչութիւնը շը–նորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Այրի Տիկին Արտեմիս Ագ–պըյըգեանէ եւ զաւակներէն յիսուն Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Ճ. Պահատուրեանէ 25, Տէր եւ Տիկին Վ. Թորամանեանէ եւ զաւակներէն 10, Տէր եւ Տիկին Մինաս–եանէ եւ զաւակներէն տասը Ն. Ֆ.։

## ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆԸ

ՄԱՐՍԷՅԼ.— Կամ. եւ Ռազմիկներու Բարեկ. Միութիւնը կը պատրաստուի՝ մեծ շուքով տօնելու Արարատի ճակատա–մարտին եւ Կիլիկիոյ գրաւման 43րդ տա–րեդարձը՝ պատ. նախագահութեամբ՝ քաղաքապետ Պ. Կասթոն Տէֆէրի։

Այս Կիրակի առաւօտ, հոգեհանգստ–եան պատարագ պիտի մատուցուի Փրա–տոյի եկեղեցւոյն մէջ՝ Արարայի եւ բո–լոր ճակատներու ազատագրութեան զո–հերուն համար։

Յաւարտ պատարագի, եկեղեցւոյ բա–կին մէջ տեղի պիտի ունենայ մասնաւոր հանդիսութիւն մը որուն ներկայ պիտի ըլլան՝ քաղաքային եւ զին. ներկայացու–ցիչներ։ Պիտի խօսի Պ. Շ.Տ. ԹԷՔԷԵԱՆ։

Կէսօրէ վերջ, ժամը 1ին, կոչունք՝ Շաթօ տէ Ֆլէօրի մէջ։ Կոչունքին հրա–ւիրուած են բոլոր տարեց ընկերները։

Փառատօնին մասնաւոր կերպով կը հը–րաւիրուին Փարիզի, Լիոնի եւ այլ շըր–ջաններու քոյր ընկերակցութիւնները։

Միութիւնը վստահ է թէ Մարսիլիոյ հայ հասարակութիւնը, ինչպէս միշտ, պիտի բերէ՝ յարգանքի իր տուրքը՝ զո–հերու նուիրական յիշատակին։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Բ. Ը. Մ. Լիոնի մասնաճիւղին տա–րեկան պարահանդէսը Շաբաթ երեկոյ 16 Դեկտեմբեր։



## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծա–նուցանէ թէ՝ իր հիմնած հայերէն լեզուի եւ հայրենագիտութեան դասընթացքը վերսկսած է Բարեգործականի սրահին մէջ, 19ա, Րիւ Վանթիւր, Չորեքշաբթի եւ Ուրբաթ օրերը, ժամը 18–21, ուսուց–չութեամբ Տիկին Ս. Թորոսեանի։ Ծը–նողներ կը հրաւիրուին օգտուիլ առի–թէն, իրենց զաւակները ղրկել չճգելու համար մայրենի լեզուի ուսումէն։ Ար–ձանագրութիւն նոյն պահերուն։

Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծա–նուցանէ թէ՝ Այրի Տիկին Արաքսի Յ. Մալաքեանէ եւ Տէր եւ Տիկին Աշոտ Մա–լաքեանէ շնորհակալութեամբ ստացած է երկու հարիւր Ն. Ֆ., իրենց ամուսնին եւ հօր ողբացեալ Յակոբ Մալաքեանի մահուան 6րդ տարելիցի հոգեհանգիստին առիթով։ Տէր եւ Տիկին Պօղոսեան – Ֆրանքեանէ՝ իրենց սիրելի հիւանդին ա–պաքինման առիթով քսան եւ քսան իւղա–գինի։ (Նուիրած են նաեւ քսան եկեղե–ցիի դպրախումբին, քսան Հայ Կապ. Խա–չին եւ քսան Մարսէյլի Աղքատախնա–մին)։ Ողբացեալ Իսահակ Տէլիպօյաճեա–նի մահուան քառասունքի հոգեհանգիս–տին առիթով՝ Պ. Ն. Գրգոչեանէ 30, Տի–կին Մ. Անտոնեանէ հինգ (նաեւ տասը Սէն Ժերոմի դպրոցին)։ Այրի Տիկին Տէ–լիպօյաճեանէ քսան (նաեւ քսան դպրա–խումբին եւ քսան Աղքատախնամին)։ Ա–ւանդ գումարները ստանալ եկեղեցիի քարտուղարութենէն։


Imprimerie Spéciale du journal « Haratch »

32, Rue de Trévise. PARIS (9e)


## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՊԱՆԵՕ ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրա–ւիրէ իր ընկերները այս Երեքշաբթի, ժամը 20.30ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւի–րէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ.— ՔԵՌԻ (էքս) խումբը, 15 Հոկտ., Կիրա–կի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին։

### ՀՐԱՒԷՐ

Հայ Գրողներու Ընկերութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ, այս Շաբաթ օր, 32 Րիւ տը Թրէվիզ, Ազգ. Տան մեծ սրահին մէջ, ժամը 17էն 19։

Օրակարգ՝ Վարչութեան ընտրութիւն։

Այրի Տիկին Ադրինէ Սագըզ, Տէր եւ Տիկին Տոքթ. Եղուարդ Սագըզ եւ զաւակը, Տէր եւ Տիկին Վահրամ Ալեքսանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ասատուր Քիթապճը եւ զաւակները (Ամերիկա), Տէր եւ Տիկին Կարօ Սագըզեան եւ զաւակը (Պուլկարիա), Տէր եւ Տիկին Հերման Նանիք եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գեղամ Նանիք, Տէր եւ Տիկին Ժիրայր Նախնիքեան եւ զաւակները (Աթէնք), ինչպէս նաեւ համայն Սագըզեան եւ Տէր-Մելքոնեան ընտանիքները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, մօրեղբօր, հօրեղբօր, քեռայրին եւ ազգականին՝

### ՏՈՔԹ. ՄԿՐՏԻՉ ՍԱԳԸԶԻ

մահը որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 11-ին, յետ կարճատեւ հիւանդութեան, իր բնակարանը:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Շաբաթ (Հոկտ. 14) ժամը 15·30ին, Շաւիլի Հայոց Եկեղեցին, (Րիւ տէ Թրուա Շանթիէ), ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Վիրոֆլէի գերեզմանատունը:

Մահազդ դրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները Այրի Տիկին Սագըզի եւ զաւակներուն:

Այրի Տիկին Յովհ. Նաճարեան եւ զաւակները՝ Տէր եւ Տիկին Վահէ Պալթայեան եւ զաւակները եւ Անդրէ Խոկարեան, Տէր եւ Տիկին Յակոբ Նաճարեան եւ զաւակները (Պէյրութ), Այրի Տիկին Սիրանուշ Հիւսնեան եւ զաւակները (Լոս-Անճըլըս), ինչպէս նաեւ Սեներքերիմեան, Տէրէտէրեան, Եօթնեղբայրեան, Թէլալեան, Պզտիկեան, Չէրչեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, եղբօր, տարքրոջ, հօրեղբօր եւ ազգականին՝

### ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆԱՃԱՐԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 9-ին, 66 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Ուրբաթ (Հոկտ. 13) ժամը 16ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը կը փոխադրուի Իվրիի գերեզմանատունը:

ԾԱՆՕԹ.— Ցաւակցութիւն՝ տոմարով:

26, Rue d'Enghien, Paris (10e)

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Ադրինէ Զիթունի, Տէր եւ Տիկին Վրոյր Զիթունի եւ ընտանեկան բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ յառաջիկայ Հոկտեմբեր 22ին Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց ամուսնոյն եւ հօր՝

### ՏԻԳՐԱՆ ԶԻԹՈՒՆԻԻ

մահուան տարելիցին առթիւ, ինչպէս նաեւ Զիթունի գերդաստանի համօրէն ննջեցելոց հոգւոյն:

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
### ՄԱՐՏ 18ԻՆ

## ՓՈԽՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

Զխաչաձեւելու համար Հ. Մ. Ը. Մ.ի Նոյեմբեր չորսի ձեռնարկը

Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Պօմոնի Ս. Սահակ-Մեսրոպ սրահին մէջ, Նոյեմբեր 11ին, Շաբաթ երեկոյեան ժամը 9ին, մեծ պատրաստութեամբ եւ գեղարուեստական շատ խնամեալ բաժինով մը, տեղի պիտի ունենան բանախօսութիւն, նուագ, երգ, արտասանութիւն եւ խմբական պարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ:

## ՊԱՏԱՐԱԳ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Այս Կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, Սրբոց Թարգմանչաց վարդապետաց տօնին առթիւ պիտի մատուցուի հանդիսաւոր քառաձայն պատարագ:

Պիտի պատարագէ եւ քարոզէ

### ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

Այս առթիւ պիտի կարդացուի Հայրապետական կոնդակ, Ս. Մեսրոպ Մաշտոցի Ծննդեան 1600ամեակին առթիւ, եւ պիտի ոգեկոչուի յիշատակը մեր Թարգմանիչ վարդապետներուն եւ Հայ Մշակոյթի բոլոր ծառայողներուն:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

## ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆԸ

ՄԱՐՍԷՅԼ.— Կամ. եւ Ռազմիկներու Բարեկ. Միութիւնը կը պատրաստուի՝ մեծ շուքով տօնելու Արարայի ճակատամարտին եւ Կիլիկիոյ գրաւման 43րդ տարեդարձը՝ պատ. նախագահութեամբ՝ քաղաքապետ Պ. Կասթոն Տէֆէրի:

Այս Կիրակի առաւօտ, հոգեհանգստեան պատարագ պիտի մատուցուի Փրատոյի եկեղեցւոյն մէջ՝ Արարայի եւ բոլոր ճակատներու ազատագրութեան զոհերուն համար:

Ցաւարտ պատարագի, եկեղեցւոյ բակին մէջ տեղի պիտի ունենայ մասնաւոր հանդիսութիւն մը որուն ներկայ պիտի ըլլան՝ քաղաքային եւ զին. ներկայացուցիչներ: Պիտի խօսի Պ. Շ. Տ. ԹԷՔԷԵԱՆ:

Կէսօրէ վերջ, ժամը 1ին, կոչունք՝ Շաթօ տէ Ֆլէօրի մէջ: Կոչունքին հրաւիրուած են բոլոր տարեց ընկերները:

Փառատօնին մասնաւոր կերպով կը հրաւիրուին Փարիզի, Լիոնի եւ այլ շրջաններու քոյր ընկերակցութիւնները:

Միութիւնը վստահ է թէ Մարսիլիոյ հայ հասարակութիւնը, ինչպէս միշտ, պիտի բերէ՝ յարգանքի իր տուրքը՝ զոհերու նուիրական յիշատակին:

## ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի հանդիսաւոր Ս. պատարագ կը մատուցուի Շաւիլի եկեղեցին մէջ, երգեցողութիւնները երաժշտապետ Պ. Նշան Սերգոյեանի ղեկավարութեամբ: Ցաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի Մկրտիչ եւ Յովհաննէս Շալճեան եղբայրներու յիշատակին: Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը:

## ՀՐԱՒԷՐ

Հայ Գրողներու Ընկերութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ, այս Շաբաթ օր, 32 Րիւ տը Թրէվիզ, Ազգ. Տան մեծ սրահին մէջ, ժամը 17էն 19:

Օրակարգ՝ Վարչութեան ընտրութիւն:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Իսրայէլէն Տիկին Նոյեմի Շատարեւեան, Հաճընցի կը փնտռէ իր հանգուցեալ եղբօր Շատարեւեան ընտանիքէն անդամներ որոնք Փարիզ կամ շրջանները կ'ապրին:

× Հայաստանէն կը փնտռեն Պ. Վարդան Վարդանեանը, ծնած 1918 Թուականին, ատպարէզով ուսուցիչ:

× Հայաստանէն կը փնտռեն Պ. Մկրտիչ Յարութիւն Արեւշատեանը, ասպարէզով բժիշկ, ունի մէկ մանչ, մէկ աղջիկ, կինը ամերիկուհի:

× Թիֆլիզէն Տիկին Հռիփսիմէ Եղամիրեան կը փնտռէ իր ամուսինը որ Բ. պատերազմին անյայտ կորսուած է: Ծընած 1912ին, ունի Օննիկ, Արշակ, Ռուպէր եւ Շուշան անունով զաւակներ եւ Երուանդ եւ Համօ անուն եղբայրներ:

Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8), հեռ.ի Թիւ ԷԼիզէ 67·03:

×

Փարիզի եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները իր Կրթ. ձեռնարկներուն համար: Պ. Յարութիւն Տամլամեան 50 Ն. Ֆ., որդ. Եսթեր Տամլամեանի հոգեհանգստեան առթիւ: Այրի Տիկին Մօզեան տասը Ն. Ֆ., Այրի Տիկին Մաքրուհի Նարլըեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



## ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը տեղի կ'ունենայ ամէն Հինգշաբթի ժամը 14էն 16, Մշակոյթի տունը՝

17, Rue Bleue, Paris (9e)

## Հ. Յ. Դ.

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին: Ներկայ կ'ըլլան Կեդր. եւ Շրջ. կոմիտէներու ներկայացուցիչները: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՇԱՎԻԼ.— Հ. Յ. Դ. Արղութեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պէլվիլի «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, ընկեր Մանուկի բնակարանը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ.—

ՔԵՌԻ (էքս) խումբը, 15 Հոկտ., Կիրակի, կէսօրէ ետք, ժամը ճիշդ 15ին:

Այրի Տիկին Ատրինէ Սաղըղ, Տէր եւ Տիկին Տոքթ. Եդուարդ Սաղըղ եւ զաւակը, Տէր եւ Տիկին Վահրամ Ալեքսան-եան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Աստուր Քիթապճը եւ զաւակները (Ամերիկա), Տէր եւ Տիկին Կարօ Սաղըղեան եւ զաւակը (Պուլկարիա), Տէր եւ Տիկին Հերման Նանիք եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գեղամ Նանիք, Տէր եւ Տիկին Ժիրայր Նախնիքեան եւ զաւակները (Աթէնք), ինչպէս նաեւ Համայն Սաղըղ-եան եւ Տէր-Մելքոնեան ընտանիքները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, մօրեղբօր, հօրեղբօր, քեռայրին եւ ազգականին՝

ՏՈՔԹ. ՄԿՐՏԻՉ ՍԱՂԸՂԻ

մահը որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 11-ին, յետ կարճատեւ հիւանդութեան, իր բնակարանը:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Շաբաթ (Հոկտ. 14) ժամը 15·30ին, Շաւիլի Հայոց Եկեղեցին, (Րիւ տէ Թրուա Շանթիէ), ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Վիրոֆլէի գերեզմանատուն-ը:

Մահազդ դրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Որբ. Օգն. մարմինը շնորհակալու-թեամբ ստացած է Պ. Զարեհ Սաքայեա-նէ քսան Ն. Ֆ., Տիկին Մաքրուհի Նառ-լըեանի յուղարկաւորութեան առթիւ, փոխան ծաղկեպսակի:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

Փարիզի շրջանի տարեկան ցերեկոյթը, ԿԻՐԱԿԻ, 4 ՄԱՐՏ, 1962 կէսօրէ վերջ ժամը 14·30ին, Սալ տը լա Շիմի:

### ՑԵՏԱԶԳՈՒԱԾ Է

ՍՕՆԱ ՔԻՒՐՔՃԵԱՆԻ եւ ՎՌԱՄ ՔԻՒՐՔՃԵԱՆԻ յիշատակին կատարուելիք հոգեհանգիստը (այս Կիրակի Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցի) յետաձըգ-ուած է քահանայի չքոյութեան պատճառաւ:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ
### ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Հ. Յ. Դ. Օր»ը Կիրակի, 22 Հոկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 4ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, (Րիւ տը լա Տէֆանս):

Աւանդական ճաշով:

Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՀԱՆՏԱԼԵԱՆ

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, զանազան անակնկալներով:

Ճաշագին 10 Ն. Ֆ.

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
### ՄԱՐՏ 18ԻՆ



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը տեղի կ'ունենայ ամէն Հինգշաբթի ժամը 14էն 16, Մշակոյթի տունը՝

17, Rue Bleue, Paris (9e)

## Հ. Յ. Դ.

ՇԱՎԻԼ.— Հ. Յ. Դ. Արղութեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պէլվիլի «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, ընկեր Մանուկի բնակարանը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ԱՌՆՈՒՎԻԼ.— Հ. Յ. Դ. Վարդան են-թակոմիտէի ժողովը այսօր, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ըն-կերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շո-փէն-Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջ-նադարեան զանձեր»:



| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

ԱԶԳ. ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ. չտան :

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ՚ընդունի :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ երեկուն, Րիւ տիւ Նուառի սրահը :

×

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին :
ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 22ին :

×

ՄԱՐՍԷՅԼԻ մէջ Հ. Յ. Դ. Օրը կը տօնուի Հոկտեմբեր 28ին, Շաբաթ գիշեր, ժամը 21էն մինչեւ լոյս, «Ալհամպրա»ի սրահներուն մէջ, աննախընթաց պատրաստութեամբ :

×

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ :

ԿԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ

ժամը 16էն 22

Սամուէլ Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ

ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ

Հանդէս

Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը տեղի կ՚ունենայ ամէն Հինգշաբթի ժամը 14էն 16, Մշակոյթի տունը՝

17, Rue Bleue, Paris (9e)

## ԾԱԽՈՒ Է

Փավիյօն մը, երեք սենեակ, մեծ խոհանոց, ամէն յարմարութիւն, բակին մէջ հանկառով : Դիմել կէս օրէ վերջերը.—

MORISI
18, Rue des Bleuets, Alfortville

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Հ. Յ. Դ. Օր»ը Կիրակի, 22 Հոկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 4ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, (Րիւ տը լա Տէֆանս) :

Աւանդական ճաշով :
Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՀԱՆՏԱՆԵԱՆ
Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, զանազան անակնկալներով :

Ճաշագին 10 Ն. Ֆ.

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ՚ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 18ԻՆ

ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

ՆԱՀԱՆՋԸ ԱՌԱՆՑ ԵՐԳԻ

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋԻՆ

Կ. ՓՈԼԱՏԵԱՆ

## ՋՐՈՅՑ

Սէն – Ժոն Փերսի (Նոպելեան մրցանակ)
Հայր Ներսէս Ակինեանի
Անտրէ Ռուսոյի
Կոստան Զարեանի
Սիմոն Վրացեանի հետ

Շատ հետաքրքրական հատոր մը զոր պիտի կարդաք հաճոյքով :

Ստանալու համար դիմել Փարիզի հայ գրավաճառներուն կամ ուղղակի հեղինակին՝

G. POLADIAN
53, Avenue de St-Julien
Marseille - 12e

Գին՝ Թղթակազմ 5 Ն. Ֆ.,
Լաթակազմ 7.50 Ն. Ֆ. :

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝

GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝

ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Գեղարուեստական ընտիր բաժին : Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը :

Յաջորդով՝ մանրամասնութիւններ :

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ
ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ
GEORGE V, 31, Ave, George V, PARIS

Եղանակին առաջին պարահանդէսը

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ Պ. Մ. ՃԻԵՐՃԵԱՆԻ

Զանազան անակնկալներ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

1.— ՍՕՍԻ պարախումբը, հայկական եւ ռուսական պարերով, ղեկավարութեամբ ՏԻԿ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ եւ առ աջնորդութեամբ ՏԵՏԷՃԵԱՆ նուագախումբի :

2.— Տաղանդաւոր սպանացի պարուհի LYTUS-DE-LUZի պարախումբը, մասնակցութեամբ Փալլիթոյի եւ իր ընկերներուն :

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝ JEAN CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղաններ հեռաձայնելով Միութեան գրասենեակը : ՓՐՕվանս 77-73

ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան :

## MORY et Cie

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ :

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք : Նուազագոյն ծախսերով կը ղրկենք Խորհրդ. Միութիւն :

Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—

10, Rue St. Vincent de Paul, Paris 10e
(PRÈS DE LA GARE DU NORD)
Téléphone : TRU. 27-70

## FOURRURES
## ROGER YOPIAN

84, Boulevard de Stalingrad
CHOISY-LE-ROI (Seine)

**Neuf et Réparation** **Prix Intéressants**

Autobus
183 de la Porte de Choisy, descendre 3 Communes ou Rue du Dr. Roux

## ԵՒՐՈՊԱՅԻ

ՄԵԾԱԳՈՅՆ ԱՐՏԱԴՐԻՉԸ

ՀԷԼՎԱ
ԼՈԳՈՒՄ
Սուսամ – ՀԷԼՎԱ

ԹԱՀԻՆ
ՇԱՐՈՑ
(ՌՈՃԻԿ)
ՎԱՐԴԷ-ԱՆՈՅՇ

LE BOSPHORE
MARQUE DEPOSEE

ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ...

CHOC-ALVA · CHOCO-LOC

Sté le BOSPHORE
SIÈGE SOCIAL
2, Rue Louis Astouin /Marseille (2ème)

Այրի Տիկին Տիգրան Խարբութլեան, Տէր եւ Տիկին Ժան Խարբութլեան, Պ. Կի Խարբութլեան, Տէր եւ Տիկին Փօլ Թորիկեան, Միշէլ եւ Ֆիլիփ Խարբութլեան, Օր. Անիթա Թորիկեան, Այրի Տիկին Է. Խարբութլեան, Այրի Տիկին Կիւլիզար Խարբութլեան, ինչպէս նաեւ Թորիկեան, Յարութիւն, Օգսէն, Քրիստոֆ, Հանրի, Յակոբոս Խարբութլեան ընտանիքները, Սինանեան, Մանուկեան, Զարգարեան, Լըպըրթոն, Պահատուրեան, Յարութիւնեան, Սահակ Խարբութլեան, Էրքէլէկեան ընտանիքները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, տաքրոջ, հօրեղբօր եւ ազգականին՝

ՏԻԳՐԱՆ ԽԱՐԲՈՒԹԼԵԱՆԻ

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 13ին, 85 տարեկանին, իր բնակարանը, 81 Րիւ տը լա Փոնփ (12 Վիլլա Հերան):

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Չորեքշաբթի, ժամը 14ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պաթինեոլի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

---

Այրի Տիկին Աշոտ Արթինեան եւ զաւակները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԱՇՈՏ ԱՐԹԻՆԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 14ին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր, Երեքշաբթի ժամը 14·30ին, Քոնֆլէնի Սէնթ-Անթուան եկեղեցին: Հաւաքուիլ բնակարանը՝ ժամը 14·15ին, 2պիս, Րիւ Քառնօ, Քոֆլէներ:

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները:

---

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Մարսէյլ – Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Վ. Աւիկեանի, իր քրոջ որդւոյն միամեայ փոքրիկն Արմէն Կիւլկիկեանի վաղաժամ մահուան առթիւ:

×

Կ. Խաչի Իթալիի մասնաճիւղը ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհի Ազաւնի Թորոսեանին եւ զաւկին եւ ընտանեկան պարագաներուն, իրենց ամուսնոյն, հօր, Խաչիկ Թորոսեանի կսկծալի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի տալը Ն. Ֆ. Կապոյտ Խաչի կայանին եւ տալը Ն. Ֆ. Մշակութային Տան: (Ստանալ «Յառաջ»էն):

---

ՎԵՐԱՄՈՒՏ

Փարիզի եկեղեցւոյ հովանաւորութեան տակ բացուած Ժանթիյիի միօրեայ հայերէնի դասընթացքները պիտի սկսին այս Հինգշաբթի:

Ծնողները կը հրաւիրուին իրենց զաւակները առաջնորդել 22 Րիւ Վիքթոր Հիւկօ, Ժանթիյիի դպրոցի սրահը:

---

ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը տեղի կ'ունենայ ամէն Հինգշաբթի ժամը 14էն 16, Մշակոյթի տունը՝

17, Rue Bleue, Paris (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Հ. Յ. Դ. Օր»ը Կիրակի, 22 Հոկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 4ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, (Րիւ տը լա Տէֆանս):

Աւանդական ճաշով:

Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՀԱՆՏԱԼԵԱՆ

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, զանազան անակնկալներով:

Ճաշագին 10 Ն. Ֆ.

---



---

ԿՈՉ ԼԻՈՆԻ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Լիոնի եւ Ռօն նահանգի, ինչպէս նաեւ Սէն Մօռիս, Քրէփիէօ, Լա Փանի եւ Միռիպէլ բնակող բոլոր Հայերը, որոնք 21 տարին թեւակոխած են, կը հրաւիրուին արձանագրուիլ ներկայացնելով իրենց ինքնութեան թուղթը, (Քարթ տ'Իտան-թիթէ) իրաւունք ունենալու համար մասնակցելու հաշուեքննիչ եւ ընտրողական յանձնախումբերու կազմութեան եւ, յետագային՝ Հայ Առաքելական Եկեղեցւոյ վարչութեան ընտրութեան:

Արձանագրութիւնները տեղի պիտի ունենան 21 Հոկտեմբեր, Շաբաթ օր ժամը 3էն 7 եւ 22 Հոկտ. Կիրակի առաւօտ ժամը 10էն մինչեւ 17, Հայոց եկեղեցին, 295 Րիւ Պուալօ, Լիոն (3):

Հաշուեքննիչ եւ ընտրողական յանձնախումբերու ընտրութիւնը տեղի պիտի ունենայ 29 Հոկտեմբեր, Կիրակի ժամը 10էն 17: Միեւնոյն վայրը:

Ի դիմաց Սեպտ. 24ի ընդհ. ժողովի դիւանին նախագահ՝ Գ. ՖԵԼԼԱԳԵԱՆ

---




Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)


## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝

GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille

Կը ՆԱԽԱԳԱՀԷ՝

ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին: Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը:

Յաջորդով՝ մանրամասնութիւններ:

---








ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

Այրի Տիկին Տիգրան Խարբութլեան, Տէր եւ Տիկին Ժան Խարբութլեան, Պ. Կի Խարբութլեան, Տէր եւ Տիկին Փօլ Թորիկեան, Միշէլ եւ Ֆիլիփ Խարբութլեան, Օր. Անիթա Թորիկեան, Այրի Տիկին Է. Խարբութլեան, Այրի Տիկին Կիւլիզար Խարբութլեան, ինչպէս նաեւ Թորիկեան, Յարութիւն, Օգսէն, Քրիսթոֆ, Հանրի, Յակոբոս Խարբութլեան ընտանիքները, Սինանեան, Մանուկեան, Զարգարեան, Լըպըրթոն, Պահատուրեան, Յարութիւնեան, Սահակ Խարբութլեան, Էրքէլէկեան ընտանիքները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, տաքրոջ, հօրեղբօր եւ ազգականին՝

ՏԻԳՐԱՆ ԽԱՐԲՈՒԹԼԵԱՆԻ

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 13ին, 85 տարեկանին, իր բնակարանը, 81 Րիւ տը լա Փոմփ (12 Վիլլա Հերան):

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Չորեքշաբթի, ժամը 14ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պա-թինեոլի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ընկեր Միսաք Սարգիսեան իր ապաքինման առթիւ քսան Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան: (Ստանալ «Յառաջ»էն):

×

Աշոտ Արթինեանի կսկծալի մահուան առթիւ, Տակառեան եւ Շիրինեան ընտանիքները յիսուն Ն. Ֆ. Մշակոյթի Տան կը նուիրեն: (Ստանալ «Յառաջ»էն):

×

Ողբ. Արշակ Պօղիկեանի մահուան առթիւ, Պօղիկեան ու Փիլիկեան ընտանիքները հարիւր Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը իր սրտագին շնորհակալութիւնները կը յայտնէ Պելֆօաբնակ, Պ. Երուանդ Տէր Եղիաեանի որ բարեհաճեցաւ 250 մեթր ծաղկաւոր կերպաս տրամադրել անկողինի ծածկոցներու համար: Պ. Տէր Եղիաեան ստանձնեց նոյնպէս վճարել սանուհիի մը ամբողջական տարեթոշակը:

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ գումարները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Փարիզէն Պ. Գրիգոր Տէր-Անդրէասեանէ քսան Ն. Ֆ., Տիկին Հայկանոյշ Սիմոնեանէ 10 Ն. Ֆ., Եղիայեան եւ Միրանոսեան ընտանիքէ հանգուցեալ Արթիւր Գազոյեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի 30:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Մարսէյլի Վասպուրականի Հայր. Միութեան վարչութիւնը ցաւակցութիւններ կը յայտնէ հայրենակիցներ՝ Պ. Պ. Վարդգէս Աւիկեանի, Տէր եւ Տիկին Գիւրկիկեանի ընտանեկան պարագաներու եւ ազգականներու իրենց փոքրիկն Արմէն Գիւրկիկեանի անսպասելի ու ղառնակսկիծ մահուան առթիւ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Հ. Յ. Դ. Օր»ը Կիրակի, 22 Հոկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 4ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, (Րիւ տը լա Տէֆանս):

Աւանդական ճաշով:

Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՀԱՆՏԱԼԵԱՆ

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, զանազան անակնկալներով:

Ճաշագին 10 Ն. Ֆ.

×

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան Պորտոյի Մուրատ խումբի:

Այս Կիրակի ժամը 15·30ին Սընօնի քաղաքապետարանի սրահը:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

×

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ երեկոյ, Րիւ տիւ Նուառի սրահը:

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին:

ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 22ին:

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի Խանասոր խումբի գրադարանը բաց է Երեքշաբթի օրերը, ժամը 9էն սկսեալ, Խրիմեան վարժարանը, 2 Րիւ տը լա Տէֆանս: Հայերէն եւ ֆրանսերէն ընտրուած գիրքեր:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ:

×

Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շոփէն-Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջ-Նաղաշեան զանձեր»:

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տիկին Լուսաբեր Աթէշեանի թաղման առթիւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուէրները եղած են.—

Պ. Պ. Հայկ Սալըրեան Պօմոնի եկեղեցին 50 Ն. Ֆ., Կիւլէսէրեան Պօմոնի եկեղեցին 40 Ն. Ֆ., Ասատուր Մարզուանլեան 15 Ն. Ֆ., Բարունակ Սիմիթեան, Գէորգ Քիւրտօղլուեան, Վահրամ Թորոմանեան տասնական Ն. Ֆ. Պօմոնի եկեղեցին:

Տիկին Լուսին Պալթայեանի թաղման առթիւ փոխան ծաղկեպսակի՝ Պ. Պ. Մեսրոպ Գասպասեան Կապոյտ Խաչին 10 Ն. Ֆ., Յովհ. Հայապործեան քսան: Նշան Դարբինեան Պօմոնի եկեղեցին 10, Յով. Տէր Վարդանեան եկեղեցին 10, Պալթայեան ընտանիք՝ Պօմոնի աղքատախնամ՝ յիսուն Ն. Ֆ.:

### ՎԵՐԱՄՈՒՏ

Փարիզի եկեղեցւոյ հովանաւորութեան տակ բացուած Ժանթիյիի միօրեայ հայերէնի դասընթացքները պիտի սկսին այս Հինգշաբթի:

Ծնողքները կը հրաւիրուին իրենց զաւակները առաջնորդել 22 Րիւ Վիքթոր Հիւկօ, Ժանթիյիի դպրոցի սրահը:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

Կը ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝

**GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille**

Կը ՆԱԽԱԳԱՀԷ՝

ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

Կը ԽՕՍԻՆ

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին: Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը:

Յաջորդով՝ մանրամասնութիւններ:



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20·30ին, 101, Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընաժի Կրընոպլի բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:



### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը տեղի կ'ունենայ ամէն Հինգշաբթի ժամը 14էն 16, Մշակոյթի տունը՝

17, Rue Bleue, Paris (9e)

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

—o—

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ, ժամը 4ին, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տունը:





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սի.նակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապոյտ Խաչի Սէն Ժերմէի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Տիկին Աղնիւ Աւիկեանին եւ իր ընտանեկան պարագաներուն փոքրիկն Արմէն Կիւրկէկեանի մահուան առթիւ։

Այս տխուր առթիւ Կապոյտ Խաչի Սէն Ժերմէի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է տասը Ն. Ֆ. Պ. Ս. Աւտոյեանէն փոխան ծաղկեպսակի։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Ատրինէ Զիթունի, Տէր եւ Տիկին Վրոյր Զիթունի եւ ընտանեկան բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ յառաջիկայ Հոկտեմբեր 22ին Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՏԻԳՐԱՆ ԶԻԹՈՒՆԻԻ

մահուան տարելիցին առթիւ, ինչպէս նաեւ Զիթունի գերդաստանի համօրէն ննջեցելոց հոգւոյն։

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները։

### ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Այս Կիրակի առաւօտեան ժամը 10ին, Ս. պատարագին պիտի կարդացուի Ն. Ս. Օծութեան կողմէ ղրկուած կոնդակը նուիրուած Ս. Մեսրոպի ծննդեան 1600-ամեակին։

Այս առթիւ պիտի պատարագէ եւ քարոզէ՝ ՎԱՐԱԳ ՔՀՆՅ. ԱԻԱԳԵԱՆ եւ պատարագը պիտի երգուի Կոմիտասեան միաձայն եկեղեցւոյ երգչախումբին կողմէ, Ս. Մեսրոպի նուիրուած մասնաւոր շարականով։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ։

×

Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շոփէն – Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջնադարեան գանձեր»։



### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը տեղի կ'ունենայ ամէն Հինգշաբթի ժամը 14էն 16, Մշակոյթի տունը՝

17, Rue Bleue, Paris (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Ջաւարեան» կոմիտէն կը տօնէ «Հ. Յ. Դ. Օր»ը Կիրակի, 22 Հոկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 4ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, (Րիւ տը լա Տէփանս)։

Աւանդական ճաշով։

Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՀԱՆՏԱՆԵԱՆ

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, զանազան անակնկալներով։

Ճաշագին 10 Ն. Ֆ.

×

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան Պորտոյի Մուրատ խումբի։

Այս Կիրակի ժամը 15.30ին Սընօնի քաղաքապետարանի սրահը։

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

×

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն, Րիւ տիւ Նուառի սրահը։

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին։

ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 22ին։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20.30ին, 101, Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը։

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընաժի Կրընոպլի բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, ակումբի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, նախապէս որոշուած ժողովատեղին։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ, ժամը 4ին, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տունը։

ԿԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ

ժամը 16էն 22

Սամուէլ Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ

ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ

Հանդէս

Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝

GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille

Կը ՆԱԽԱԳԱՀԷ՝

ԸՆԿ. Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին։ Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը։

Յաջորդով՝ մանրամասնութիւններ։



## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

GEORGE V, 31, Ave, George V, PARIS

Եղանակին առաջին պարահանդէսը

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ Պ. Մ. ՃԻԷՐՃԵԱՆԻ

Զանազան անակնկալներ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

1.— ՍՕՍԻ պարախումբը, հայկական եւ ռուսական պարերով, ղեկավարութեամբ ՏԻԿ. Յ. ՔԻԻԹՆԷՐԵԱՆԻ եւ առաջնորդութեամբ ՏԷՍԷՃԵԱՆ նուագախումբի։

2.— Տաղանդաւոր սպանացի պարուհի LYTUS-DE-LUZի պարախումբը, մասնակցութեամբ Փալլիթոյի եւ իր ընկերներուն։

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝ JEA CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղան ները հեռաձայնելով Միութեան գրասենեակը։ ՓՐՕվանս 77-73 ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ

## ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆ

Հոկտեմբեր 21, Շաբաթ կէսօրէ վերջ ժամը չորսին Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի երեկոյեան ժամերգութիւն որմէ յետոյ տեղի պիտի ունենայ

ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ԿՈՉՄԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆ

×

Կիրակի, Հոկտեմբեր 22, հանդիսաւոր Ս. պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, պիտի պատարագէ Կաթողիկոսական պատուիրակ Սերովբէ Եպիս. ՄԱՆՈՒԿԵԱՆ: Պիտի կատարուի քահանայութեան ձեռնադրութիւն եւ Օծում Տիրացու Մանուէլ Թիւֆէնճեանի:

Սկիզբ Ս. պատարագի ժամը 10ին:

Սկիզբ ձեռնադրութեան ժամը 10·30ին:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը ներկայ ըլլալու այս բացառիկ եւ հոգեզմայլ արարողութեան:

## ՆՈՒԷՐ

Պ. Փետրօ Կարապետեան 15 Ն. Ֆ. կը նուիրէ հանգստեան տուներուն: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Որբ. Օգն. Մարմինը շնորհակալութեամբ ստացած է Տիկին Ֆօռդինէ Մուրատեանէ 10·000 Ֆր. Պ. Արտաշէս Մուրատեանի եւ Տիկին Վիքթորիա Ստեփանեանի յիշատակին, նոյնպէս Ստեփանեան եւ Քէմհաճեան ընտանիքներուն հոգւոյն համար:

Տիկին Զէլվէեանէ երկու հազար Ֆր. Ողբացեալ Տիկին Ազարեանի մահուան առթիւ:

×

Փարիզի Եկեղեցւոյ Դիւանը շնորհակալութեամբ ստացած է՝ հետեւեալ նուէրները իր Կրթ. ձեռնարկներուն համար:

Այրի Տիկին Մօզեան 10 Ն. Ֆ., Տիկին Նարլըեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի, Տիկին Տէօքմէճեան քսան Ն. Ֆ., Պ. Ժիրայր Զիլինկիրեան 50:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Աւրինէ Զիթունի, Տէր եւ Տիկին Վրոյր Զիթունի եւ ընտանիքը բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ յառաջիկայ Հոկտեմբեր 22ին Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՏԻԳՐԱՆ ԶԻԹՈՒՆԻԻ

մահուան տարելիցին առթիւ, ինչպէս նաեւ Զիթունի գերդաստանի համօրէն ննջեցելոց հոգւոյն:

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:

## ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Այս Կիրակի առաւօտեան ժամը 10ին, Ս. պատարագին պիտի կարդացուի Ն.Ս. Օծութեան կողմէ ղրկուած կոնդակը նուիրուած Ս. Մեսրոպի ծննդեան 1600-ամեակին:

Այս առթիւ պիտի պատարագէ եւ քարոզէ՝ ՎԱՐԱԳ ՔՀՆՅ. ԱԻՍԱԳԵԱՆ եւ պատարագը պիտի երգուի Կոմիտասեան միաձայն եկեղեցւոյ երգչախումբին կողմէ, Ս. Մեսրոպի նուիրուած մասնաւոր շարականով:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Հ. Յ. Դ. Օր»ը Կիրակի, 22 Հոկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 4ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, (Րիւ տը լա Տէֆանս):

Աւանդական ճաշով:

Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՀԱՆՏԱԼԵԱՆ

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, զանազան անակնկալներով:

Ճաշագին 10 Ն. Ֆ.

×

ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան Պորտոյի Մուրատ խումբի:

Այս Կիրակի ժամը 15·30ին Սընօնի քաղաքապետարանի սրահը:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

×

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն, Րիւ տիւ Նուաժի սրահը:

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին:

ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Հոկտեմբեր 22ին:

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20·30ին, 101, Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընաժի Կրընոպլի բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, նախապէս որոշուած ժողովատեղին: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ, ժամը 4ին, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տունը:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ:

×

Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շոփէն – Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջնադարեան գանձեր»:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

ALHAMBRA, 340, Bd. Chave

ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝

GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝

ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին: Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը:

Յաջորդով՝ մանրամասնութիւններ:

## Super Boom !!!

Պարանցիկ ցերեկոյթ, կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ալֆորվիլի մասնաճիւղին կողմէ:

22 Հոկտեմբեր 1961, ժամը 17էն – 23 ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ մէջ:

17, Rue Bleue, Paris 9e

**Ambiance** **Bar** **Buffet**

**Disques Sélectionnés**

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

GEORGE V, 31, Ave, George V, PARIS

Եզանակին առաջին պարահանդէսը

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ Պ. Մ. ՃԻԷՐՃԵԱՆԻ

Զանազան անակնկալներ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

1.— ՍՕՍԻ պարախումբը, հայկական եւ ռուսական պարերով, ղեկավարութեամբ ՏԻԿ. Յ. ՔԻԻԹՆԷՐԵԱՆԻ եւ առաջնորդութեամբ ՏԷՏԷՃԵԱՆ նուագախումբի:

2.— Տաղանդաւոր սպանացի պարուհի LYTUS-DE-LUZի պարախումբը, մասնակցութեամբ Փայլիթոյի եւ իր ընկերներուն:

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝ JEAN CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը: ՖՐՕվանս 77-73 ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ

## ՔԱՂԱՆԱՅԱԿԱՆ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆ

Հոկտեմբեր 21, Շաբաթ կէսօրէ վերջ ժամը չորսին Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի երեկոյեան ժամերգութիւն որմէ յետոյ տեղի պիտի ունենայ

ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ԿՈՉՄԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆ

×

Կիրակի, Հոկտեմբեր 22, հանդիսաւոր Ս. պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, պիտի պատարագէ Կաթողիկոսական պատուիրակ Սերովբէ Եպիս. ՄԱՆՈՒԿԵԱՆ: Պիտի կատարուի քահանայութեան ձեռնադրութիւն եւ Օծում Տիրացու Մանուէլ Թիւֆէնքճեանի:

Սկիզբ Ս. պատարագի ժամը 10ին:

Սկիզբ ձեռնադրութեան ժամը 10·30ին:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը ներկայ ըլլալու այս բացառիկ եւ հոգեզմայլ արարողութեան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ատրինէ Մ. Սագըզ եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով մասնակից եղան իրենց սուգին, իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՏՈՔԹ. ՄԿՐՏԻՉ ՍԱԳԸԶԻ

մահուան առթիւ:

## ՑԵՐԵԿՈՅԹ

Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղի կողմէ, Կիրակի 29 Հոկտեմբեր, կէսօրէ վերջ, ժամը 4–10:

17, Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ:

Ծոխ պիւֆէ:

Մատչելի գին: Մուտք 2 Ն.Ֆ.

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

«Զուարթնոց»ի խմբագիրը Հր. Բալուեան, մեզմէ կը խնդրէ յայտարարել թէ՝ տկարացած ըլլալով հիւանդանոց մտած է: Թերթին Ե. տարուան թիւ 9–10ը մեծ մասամբ տպագրուած, աւարտելու մօտ էր, բայց ստիպուած է դադրեցնել ամէն աշխատանք:

Այս առթիւ կը խնդրէ իր բաժանորդներէն ներողամտութիւն այս կարճ դադարին համար:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ:

×

Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շոփէն – Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջնադարեան գանձեր»:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Հ. Յ. Դ. Օր»ը Կիրակի, 22 Հոկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 4ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, (Րիւ տը լա Տէֆանս):

Աւանդական ճաշով:

Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՀԱՆՏԱԼԵԱՆ

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, զանազան անակնկալներով:

Ճաշագին 10 Ն. Ֆ.

×

### ՊՈՐՏՕՅԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան Պորտօյի Մուրատ խումբի:

Այս Կիրակի ժամը 15·30ին Սընօնի քաղաքապետարանի սրահը:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

×

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն, Րիւ տիւ Նուառի սրահը:

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին:

ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Նոյեմբեր ՓԻն:

## ԾԱԽՈՒ Է

Ծախու է փավիյոն մը, հինգ սենեակ եւ առանձին աշխատանոց մը, երկու յարկի վրայ, կառատուն երկու կառքի համար, ամէն յարմարութիւն, հեռաձայն, եւայլն:

Դիմել՝ ՏԱԼԵԱՆ,

72, Ave. Victor Hugo, Clamart (Seine) MIC. 40-46

Տրամադրելի է նաեւ մեծ քանակութեամբ քոնֆէքսիոնի դերձան, ամէն գոյն եւ պութոնիէռի Սինկէռ մեքենայ մը, (Սան քուփ – փիլ):

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբին ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20·30ին, 101, Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընաժի Կրընոպլի բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, նախապէս որոշուած ժողովատեղին: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ, ժամը 4ին, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տունը:



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝

GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille

Կը ՆԱԽԱԳԱՀԷ՝

ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին: Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը:

Յաջորդով՝ մանրամասնութիւններ:





## ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍ
## ՆՈՒԻՐՈՒԱԾ Ս. ՄԵՍՐՈՊԻ ԾՆՆԴԵԱՆ 1600ԱՄԵԱԿԻՆ

Տէսինի Կրօն. Ընկերակցութեան նախաձեռնութեամբ։

Կը հրաւիրուի Տէսինի եւ շրջակայքի Հայութիւնը տօնակատարութեան հանդէսին, նուիրուած Ս. Մեսրոպի ծննդեան 1600ամեակին։

Կը խօսի տեղւոյն հոգեւոր հովիւը՝
ՎԱՐԱԳ ՔՀՆՅ. ԱԻԱԳԵԱՆ

Նախագահութեամբ Պ. ՄԵՍՐՈՊ ՊԱՅԱՆՏՐԵԱՆԻ։

Ցայտագրին մաս կը կազմեն կենդանի պատկեր մը նուիրուած Ս. Մեսրոպի, ուսուցիչ Թրապօշի կողմէ պատրաստուած։ Ինչպէս նաեւ երկձայն խմբերգներ, արտասանութիւններ եւ մեներգներ, Եկեղեցւոյ երգչախումբին կողմէ։

Տեղի կ'ունենայ 28 Հոկտեմբեր, Կիրակի իրիկուն, ժամը 8·30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ։

Ծանօթ.— Հանդէսը կը սկսի ճիշդ որոշեալ ժամուն։



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն, Րիւ տիւ Նուատի սրահը։

×

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին։
ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Նոյեմբեր 5ին։

×

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝
ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ
Լիւթէսիայի մէջ։

×

Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շոփէն – Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջնադարեան գանձեր»։

### ՍԵՆԵԱԿ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայ ուսանողուհի մը սենեակ մը կը փնտռէ, քոնֆորով հայ պարկեշտ ընտանիքի մը մօտ։ Նախընտրաբար Քառթիէ Լաթէն։ Դիմել Յառաջի վարչութեան։





### ՑԵՐԵԿՈՅԹ

Ց. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղի կողմէ, Կիրակի 29 Հոկտեմբեր, կէսօրէ վերջ, ժամը 4–10։

17, Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ։

Ծոխ պիւֆէ։

Մտոչելի գին։ Մուտք 2 Ն.Ֆ.



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբին ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

### ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՄԱՆՑ ԿԵԴՐՈՆ
### (Centre d'Édud s Arménien)

ԽՄԲԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
Ֆրանսայի ամենահին եկեղեցւոյ

St. Germigny des Près
(Օրլէանի մօտ)

Որուն ճարտարապետը Հայ մը եղած է։ Որ շինարարն է նաեւ Էքս լա Շափէլի հռչակաւոր գմբէթին։

Հանրակառքով երթուդարձ 10 Ն. Ֆ.

ԺԱՄԱԴՐԱՎԱՅՐ.— Ազգային Տուն՝ 32 Րիւ տը Թրէվիզ, մէթրօ Քատէ կիրակի, Նոյեմբեր 5, ժամը ճիշդ 8ին կանխաւ ապահովել տեղերը մինչեւ Հոկտեմբեր 28ը։

ԴԻՄԵԼ.— Պ. Ադամեան,
53, Rue de Châteaudun TRI. 57-74
Պ. Դանիէլեան,
38, Rue des Châlons NAT. 42-50
Centre d'Études Arménien
Ուրբաթ օրերը 18էն 21





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝
GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille
Կը ՆԱԽԱԳԱՀԷ՝
ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ
ԿԸ ԽՕՍԻՆ
Շ. ՆԱՐԴՈՒՆԻ
ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին։ Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը։

Յաջորդով՝ մանրամասնութիւններ։

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ
ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ
GEORGE V, 31, Ave, George V, PARIS
Եղանակին առաջին պարահանդէսը

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ Պ. Մ. ՃԻԷՐՃԵԱՆԻ

Զանազան անակնկալներ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ Մ ԱՍՆԱԿՑԻՆ՝

1.— ՍՕՍԻ պարախումբը, հայկական եւ ռուսական պարերով, ղեկավարութեամբ Տիկ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ եւ առաջնորդութեամբ ՏԷՏԷՃԵԱՆ նուագախումբի։

2.— Տաղանդաւոր սպանացի պարուհի LYTUS-DE-LUZԻ պարախումբը, մասնակցութեամբ Փալլի Թոյի եւ իր ընկերներուն։

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝ JEAN CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը։ ՓՐՕվանս 77–73
ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ

ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

ՀԱՄԲԵՍՏՈՒՀԻ ՏԸՐԻԿԵԱՆ

եւ

ՍՏԵՓԱՆ ԲԻՐԼԵԱՆ

Ամուսնացած

*Մարսէյլի Մայր Եկեղեցւոյ մէջ*, 1961 Հոկտեմբեր 8ին :

## ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍ ՆՈՒԻՐՈՒԱԾ Ս. ՄԵՍՐՈՊԻ ԾՆՆԴԵԱՆ 1600ԱՄԵԱԿԻՆ

*Տէսինի Կրօն. Ընկերակցութեան նախաձեռնութեամբ :*

*Կը հրաւիրուի Տէսինի եւ շրջակայքի Հայութիւնը տօնակատարութեան հանդէսին, նուիրուած Ս. Մեսրոպի ծննդեան 1600ամեակին :*

*Կը խօսի տեղւոյն հոգեւոր հովիւը՝*

*ՎԱՐԱԴ ՔՀՆՅ. ԱԻԱԳԵԱՆ*

*Նախագահութեամբ* Պ. ՄԵՍՐՈՊ ՊԱՅԱՆՏՐԵԱՆի :

*Յայտագրին մաս կը կազմեն կենդանի պատկեր մը նուիրուած Ս. Մեսրոպի, ուսուցիչ Թրապօշի կողմէ պատրաստուած : Ինչպէս նաեւ երկձայն խմբերգներ, արտասանութիւններ եւ մեներգներ, Եկեղեցւոյ երգչախումբին կողմէ :*

*Տեղի կ'ունենայ 28 Հոկտեմբեր, Կիրակի իրիկուն, ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ :*

*Ծանօթ.— Հանդէսը կը սկսի ճիշդ որոշեալ ժամուն :*

## ՑԵՐԵԿՈՅԹ

*Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղի կողմէ, Կիրակի 29 Հոկտեմբեր, կէսօրէ վերջ, ժամը 4–10 :*

17, Րիւ Պլէօ, *Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ :*

*Ճոխ պիւֆէ :*

*Մատչելի գին :* Մուտք 2 Ն.Ֆ.

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբին ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :*

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի Խանասոր խումբի գրադարանը բաց է Երեքշաբթի օրերը, ժամը 9էն սկսեալ, Խրիմեան վարժարանը*, 2 Րիւ տը լա Տէֆանս : *Հայերէն եւ ֆրանսերէն ընտրուած գիրքեր :*

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

*ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝*

GASTON DEFERRE, Sénateur-Maire de Marseille

*ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝*

ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

*ԿԸ ԽՕՍԻՆ*

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

*Երիտասարդ Դաշնակցականներուն կողմէ կը խօսի՝*

*ԸՆԿ. Յ. ԱՐԹԻՆԵԱՆ*

*Գեղարուեստական ընտիր բաժին : Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը :*

Մ. Տէրոյեան, Ա. Չէօրէքճեան (*երգ*), *Ա. Յարութիւնեան, Ս. Մասոյեան (արտասանութիւն)*, *փոքրիկն* Ծօշկունեան (*ձեռնադաշնակ*) :

*Կը ներկայացուի Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ*

*« ԷԼ ՄԻ ԱՂՕԹԻՐ »Ը*

*Պիտի ցուցադրուի «Անմահներու ՏՈՂԱՆՑՔԸ» (Լուսապատկեր) :*

*Կէս գիշերէն մինչեւ առաւօտ* *ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ.—*

**Hazy Siegel**

*Օրուան խօսնակ.— ԸՆԿ. Կ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ ողբ. Օր. Փրլանթի Սահակեանի յուղարկաւորութեան առիթով փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները. — Յ. Գափամաճեան 20 Ն. Ֆ., Ոմն 10, Հ. Սալըրեան 20, Պ. Թէրզեան 10 : Իսկ Մարսէյլի Ազգատախնամին Տօմխօ ընտանիք 10, Տիկին Պիպէռեան 10, Տիկին Հէլվաճեան 10 :*

×

*Մայր եկեղեցիի վարչութիւնը կը խնդրէ հասարակութենէն նկատի ունենալ որ՝ իր հեռախօսի թիւը առժամապէս փոխուած է 20.63.43ի :*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը կը տօնուի Լիոնի մէջ, 4 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն, Րիւ տիւ Նուառի սրահը :*

×

*ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին :*

*ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Նոյեմբեր 5ին :*

×

*Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝*

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ :

×

*Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շոփէն – Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պատմը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջնադարեան գանձեր» :*

---

ԿԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ

ժամը 16էն 22

Սամուէլ Մուրատեան

վարժարանի թատերասրահին մէջ

**ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ**

Հանդէս

Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

*Այս Կիրակի, Գիւտ Խաչի տօնին առթիւ ըստ սովորութեան հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ տեղի պիտի ունենայ Պօմոնի Ս. Գ. Լուս. եկեղեցւոյ մէջ ի յիշատակ Հար. Ֆրանսայի շինարար Առաջնորդ հանգուցեալ*

*ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ. ՊԱԼԱԳԵԱՆԻ*

*անոր մահուան 27րդ տարելիցին առթիւ, ինչպէս նաեւ Բիւթանիոյ հանգուցեալ Առաջնորդ*

*ՍՏԵՓԱՆՈՍ ԱՐՔ. ՅՈՎԱԿԻՄԵԱՆԻ*

*եւ նորոգ հանգուցեալ Կ. Պոլսոյ Պատրիարք՝*

*ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ*

*եւ Մարսիլիոյ հանգուցեալ եօթը քահանայ հայրերու հոգւոց ի յիշատակ : Յաւարտ հանդիսութեանց, կէս օրէ յետոյ ժամը երեքին Սէն Փիէրի գերեզմանատան մէջ նորակերտ շիրմին վրայ պիտի կատարուի հոգեհանգիստ, հոն հանգչող Սրբազանին եւ եօթը քահանայից համար : Կը հրաւիրուի Մարսիլիոյ Հայութիւնը ներկայ ըլլալ յիշատակի այս կրկնակ արարողութեանց :*

---

ՃԱՀԱՆ

ԱՀՈՒՆԻ

ՆԱՀԱՆՋԸ ԱՌԱՆՑ ԵՐԳԻ

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋին

---

Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

**ՋՐՈՅՑ**

Սէն – Ճօն Փերսի (Նոպելեան մրցանակ)

Հայր Ներսէս Ակինեանի

Անտրէ Ռուսոյի

Կոստան Զարեանի

Սիմոն Վրացեանի հետ

*Շատ հետաքրքրական հատոր մը զոր պիտի կարդաք հաճոյքով :*

*Ստանալու համար դիմել Փարիզի հայ գրավաճառներուն կամ ուղղակի հեղինակին՝*

G. POLADIAN

53, Avenue de St-Julien

Marseille - 12e

*Գին՝ Թղթակազմ 5 Ն. Ֆ., Լաթակազմ 7.50 Ն. Ֆ. :*

---

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

GEORGE V, 31, Ave, George V, PARIS

Եղանակին առաջին պարահանդէսը

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ Պ. Մ. ՃԻԷՐՃԵԱՆԻ

Զանազան անակնկալներ

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ Մ ԱՍՆԱԿՑԻՆ՝*

1.— *ՍՕՍԻ պարախումբը, հայկական եւ ռուսական պարերով, ղեկավարութեամբ ՏԻԿ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ եւ առաջնորդութեամբ ՏԷՏԷՃԵԱՆ նուագախումբի :*

2.— *Տաղանդաւոր սպանացի պարուհի* LYTUS-DE-LUZԻ *պարախումբը, մասնակցութեամբ Փալլիթոյի եւ իր ընկերներուն :*

*ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝* JEAN CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

*Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը :* ՓՐՕվանս 77–73 ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ



---

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARJS (9e)

### ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍ
### ՆՈՒԻՐՈՒԱԾ Ս. ՄԵՍՐՈՊԻ ԾՆՆԴԵԱՆ 1600ԱՄԵԱԿԻՆ

*Տէսինի Կրօն. Ընկերակցութեան նախաձեռնութեամբ:*

*Կը հրաւիրուի Տէսինի եւ շրջակայքի Հայութիւնը տօնակատարութեան հանդէսին, նուիրուած Ս. Մեսրոպի ծննդեան 1600ամեակին :*

*Կը խօսի տեղւոյն հոգեւոր հովիւը՝*
ՎԱՐԱԳ ՔՀՆՅ. ԱԽԱԳԵԱՆ
*Նախագահութեամբ* Պ. ՄԵՍՐՈՊ ՊԱՅԱՆՏՐԵԱՆԻ :

*Ցայտագրին մաս կը կազմեն կենդանի պատկեր մը նուիրուած Ս. Մեսրոպի, ուսուցիչ Թրազօշի կողմէ պատրաստուած : Ինչպէս նաեւ երգճայն խմբերգներ, արտասանութիւններ եւ մեներգներ, Եկեղեցւոյ երգչախումբին կողմէ :*

*Տեղի կ'ունենայ 28 Հոկտեմբեր, Կիրակի իրիկուն, ժամը 8·30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:*

*Ծանօթ.— Հանդէսը կը սկսի ճիշդ որոշեալ ժամուն :*

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

*Փարիզի Օփերայի Նոպլը պաս ժիրայր Սերգոյեան, կը մասնակցի «Թաղաւոր»ի դերով, Ռուա Տիսի ձայնասփռումին, որ տեղի պիտի ունենայ այս Ուրբաթ իրիկուն ժամը 20ին, Ֆրանս 3ի վրայ :*

## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

*Վիէնէն ընկեր Աւագ Լուսարեւեան 20 Ն. Ֆ. կը նուիրէ «Յառաջ»ին իր այցելութեան առթիւ :*

## ՆՈՒԷՐ

*Տէր եւ Տիկին Մինասօղլու 10 Ն. Ֆ., կը նուիրեն Ազգատախնամին, Այրի Տիկին Մարտիկեանի յիշատակին : (Ստանալ «Յառաջ»էն) :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Լեւոն Փափազեան եւ իր զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի (29 Հոկտ.) առաւօտ,*
ԼԵՒՈՆ ՓԱՓԱԶԵԱՆԻ
*մահուան քառասունքին առթիւ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. ԽԱՉԻ Պանթէօ – Քաշանի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս Ուրբաթ ժամը 20·30ին, ընկերուհի Հանչէրեանի բնակարանը, 9, Րիւ տէ Փրէ, (Պանթէօ) : Խիստ կարեւոր օրակարգ : Կը խնդրուի ներկայ գտնուիլ :*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր եկեղեցիի վարչութիւնը կը խնդրէ հասարակութենէն նկատի ունենալ որ՝ իր հեռախօսի թիւը առժամապէս փոխուած է 20·63·43ի :*




Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)


Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

### ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՇՏՕՆ ԵՒ ԳԵՐԵԶՄԱՆԻ ԱՅՑ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

*Այս Կիրակի առաւօտ ժամը 10ին, Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ, (8 Րիւ տէ Պրոշէ) : Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէի, Ալֆորվիլի շրջանի մահացեալ բոլոր ընկերներուն յիշատակին.— Ահարոն Պէրպէրեան, Յովհ. Պէրպէրեան, Լեւոն Նէտիլեան, Բիւզանդ Գամեան, Նազար Բապուճեան, Աւագ Պաղտասարեան, Դաւիթ Զապունեան, Օննիկ Գուրեան, Յովհ. Արզարեան, Մկրտիչ Կարապետեան, Պօղոս Պօղոսեան, Վաղարշակ Ուրբաթեան, Հմայեակ Ուզունեան, Տօքթ. Յ. Կիւլկեցի, Տէր եւ Տիկին Հայկ Թէնէքէճեան, Ահարոն Արրահամեան, Աշոտ Նշանեան, Շաւարշ Տէր Պարսամեան (Հ. Յ. Դ. Նոր Սերունդէն) :*

*Պատարագէն յետոյ շիրիմներու այց եւ ծաղիկներու զետեղում :*

*Կը հրաւիրուին ննջեցեալ պարագաներ, բարեկամներն ու ընկերները :*

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

*Այս Կիրակի, Գիւտ Խաչի տօնին առթիւ ըստ սովորութեան հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ տեղի պիտի ունենայ Պօմոնի Ս. Գ. Լուս. եկեղեցւոյս մէջ ի յիշատակ Հար. Ֆրանսայի շինարար Առաջնորդ հանգուցեալ*
ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ. ՊԱԼԱԳԵԱՆԻ
*անոր մահուան 27րդ տարելիցին առթիւ, ինչպէս նաեւ Բրիտանիոյ հանգուցեալ Առաջնորդ*
ՍՏԵՓԱՆՈՍ ԱՐՔ. ՅՈՎԱԿԻՄԵԱՆԻ
*եւ նորոգ հանգուցեալ Կ. Պոլսոյ Պատրիարք՝*
ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ
*եւ Մարսիլիոյ հանգուցեալ եօթը քահանայ հայրերու հոգւոց ի յիշատակ : Յաւարտ հանդիսութեանց, կէս օրէ յետոյ ժամը երեքին Սէն Փիէրի գերեզմանատան մէջ Նորակերտ շիրմին վրայ պիտի կատարուի հոգեհանգիստ, հոն հանգչող Սրբազանին եւ եօթը քահանայից համար : Կը հրաւիրուի Մարսիլիոյ Հայութիւնը ներկայ ըլլալ յիշատակի այս կրկնակ արարողութեանց :*



## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբին ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :*

## ՑԵՐԵԿՈՅԹ

*Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղի կողմէ, Կիրակի 29 Հոկտեմբեր, կէսօրէ վերջ, ժամը 4–10 :*

*Յետաձգուած է չխաչաձեւելու համար Ազգատախնամի պարահանդէսը :*

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտեմբեր 28, ժամը 21էն մինչեւ լոյս

**ALHAMBRA, 340, Bd. Chave**

*ԿԸ ՀՈՎԱՆԱՒՈՐԷ՝*

**GASTON DEFERRE,** Sénateur-Maire de Marseille

*Կը ՆԱԽԱԳԱՀԷ՝*

ԸՆԿ Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

*ԿԸ ԽՕՍԻՆ*

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ
ԵՒ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

*Երիտասարդ Դաշնակցականներուն կողմէ կը խօսի՝*
*ԸՆԿ. Յ. ԱՐԹԻՆԵԱՆ*

*Գեղարուեստական ընտիր բաժին: Կը մասնակցին Նոր Սերունդի երգչախումբը եւ պարախումբը :*

Մ. Տէրոյեան, Ա. Չէօրէքճեան (*երգ*), *Ա. Յարութիւնեան, Ս. Մասոյեան (արտասանութիւն)*, *փոքրիկն* Ճօշկունեան (*ձեռնադաշնակ*) :

*Կը ներկայացուի Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ*
*« ԷԼ ՄԻ ԱՂՕԹԻՐ »Ը*

*Պիտի ցուցադրուի «Անմահներու ՏՕՂԱ ՆՑՔԸ» (Լուսապատկեր) :*

*Կէս գիշերէն մինչեւ առաւօտ* *ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ.—*

**Hazy Siegel**

*Օրուան խօսնակ.— ԸՆԿ. Կ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ*

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ
ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ
GEORGE V, 31, Ave, George V, PARIS

Եղանակին առաջին պարահանդէսը

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ Պ. Մ. ՃԻԷՐՃԵԱՆԻ

Զանազան անակնկալներ

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝*

1.— *ՍՕՍԻ պարախումբը, հայկական եւ ռուսական պարերով, ղեկավարութեամբ ՏԻԿ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ եւ առաջնորդութեամբ ՏԷՏԷՃԵԱՆ նուագախումբի :*

2.— *Տաղանդաւոր սպանացի պարուհի* LYTUS-DE-LUZի *պարախումբը, մասնակցութեամբ Փապլի Թոյի եւ իր ընկերներուն :*

*ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ՝* JEAN CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

*Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը :* ՓՐՕվանս 77–73 ՄՈՒՏՔ 6 Ն. ՖՐԱՆՔ

Տէր եւ Տիկին Վասիլ Յ. Տէր – Դաւթեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ռուբէն Տէր – Դաւթեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Պարտիզպանեան եւ զաւակները (Երեւան), Օր. Աննա Տէր – Դաւթեան (Թիֆլիզ), Տէր եւ Տիկին Արմէն Բար – սեղեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Տէր – Դաւթեան, Պարտիզպանեան, Համամճեան, Մահիլեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, քրոջ, մօրաքրոջ, հարսին եւ մօրաքրոջ աղջկան՝

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ – ԴԱՒԹԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 26–ին, իր բնակարանը:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Երեքշաբթի, ժամը 15·45ին, Շաւիլի եկեղեցիին մէջ: Հաւաքուիլ բնակարանը ժամը 15·30ին: 13 Րիւ Ալֆրէտ Ֆուրնիէ (Շաւիլ):

Ըստ հանգուցեալին փափաքին ոչ ծաղիկ, ոչ ծաղկեպսակ:

×

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը խոր կսկիծով կը տեղեկացնէ իր շրջանի բոլոր ընկերուհիներուն թէ իր հիմնադիրներէն՝

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ – ԴԱՒԹԵԱՆ

իր մահկանացուն կնքած է Շաւիլի իր բնակարանին մէջ, Հոկտեմբեր 26ին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երեքշաբթի (Հոկտ. 31) ժամը 15·45 Շաւիլի եկեղեցին:

×

Այս տխուր առթիւ Կապ. Խաչի Շրջ. վարչութիւնը երկու հարիւր Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան, փոխան ծաղկեպսակի:

×

Տիկին Սաթենիկ Տէր–Դաւթեանի մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Հայկ Սէ – րէնկիւլեան հարիւր Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Բ. Ը. Մ. Հայուհեաց մասնաճիւղին տարեկան պարահանդէսը՝ ԴԵԿՏԵՄԲԵՐ 16ԻՆ, ՇԱԲԱԹ:

×

Շաւիլի դպրոցին ի նպաստ թրուելիք պարահանդէսը Դեկտեմբեր 3ին,ման – րամասնութիւնները յաջորդաբար:

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ: Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին:

×

Հայ Կարմիր Խաչի Տարեկան Ցերեկոյթ պարահանդէսը, Կիրակի, Յունուար 28, ժամը 16 – 24, Ամպասատէօրի սրահին մէջ:



ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Էքսիզեան Եղուարդ Յարութիւնի ծնած Սոխում: 1923ին: Մօրը անունը՝ Միրանուշ (ուսուցչուհի), հայրը՝ ծխախոտի գործ կ'ընէր: Ընտանիքը լուր չունի 1942էն ի վեր:

×

Սէմէրճեան Լեւոն Գրիգորի, ծնած 1918ին, Սոխում, մայրը՝ Մարանիկ, հայրը՝ Գրիգոր, լուր չկայ 1941էն ի վեր: Գրել Յառաջի վարչութեան:

Օր. ՄԱՐԿՐԻԹ ՄՈՒՐԱՏԵԱՆ

եւ

CLAUDE FORESTIER

Ամուսնացած

Փարիզ, 28 Հոկտեմբեր 1961

Կնքահայրութեամբ Պ. ԱՆՏՐԷ ՓԱՆՈՍԵԱՆԻ:

Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 21ին Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը միջ – մասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ, Փարիզի շրջանի մասնաճիւղերու ներկայացուցիչները, այս Երկուշաբթի, ժամը 15ին, Մշակոյթի Տան սրահին մէջ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՄՕՏ ՕՐԷՆ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

ՔԵՐՈՎԲԷ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

ԱԼՊՈՄ

ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ

ՆՈՒԻՐՈՒԱԾ

ՏԱՐՕՆ ԱՇԽԱՐՀԻ

Բ. ՄԱՍԸ ՆՈՒԻՐՈՒԱԾ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄԵԱՅ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՎԵՐԵԼՔԻՆ:

Տպարան ՏԱՐՕՆ, Լիոն, 1962

Դիմել հեղինակին՝

Ք. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ (Տարօն)

20, Avenue des Cottages

CALUIRE (Rhône)

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ

ՑԵՐԵԿՈՅԹ

ՄԱՐՏ 11ԻՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

ՋՐՈՅՑ

Սէն – Ժօն Փերսի (Նոպելեան մըրցանակ)

Հայր Ներսէս Ակինեանի

Անտրէ Ռուսոյի

Կոստան Զարեանի

Սիմոն Վրացեանի հետ

Շատ հետաքրքրական հատոր մը զոր պիտի կարդաք հաճոյքով:

Ստանալու համար դիմել Փարիզի հայ գրավաճառներուն կամ ուղղակի հեղինակին՝

G. POLADIAN

53, Avenue de St-Julien

Marseille - 12e

Գին՝ թղթակազմ 5 Ն. Ֆ., Լաթակազմ 7·50 Ն. Ֆ.:



ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբին:

Այս Շաբաթ երեկոյ ժամը 8·30ին, Րիւ տիւ Նուառի սրահին մէջ:

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ Տ. ՁԷԳԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

Գեղարուեստական ճոխ բաժին, որուն կը մասնակցին.—

Օր. ԱՆԺԷԼ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ եւ Փարիզէն յատկապէս հրաւիրուած ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), դաշնակի ընկերակցութեամբ ծանօթ խմբավար ԿԱԱՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ:

ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ, ՅԱՏԿԱՊԷՍ ԱՄԵՐԻԿԱՅԻ

ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐՈՒ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԻՉՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Տպարան ՍԵՒԱՆը կը ստանձնէ տպագրութիւնը այն գիրքերուն, որոնց հեղինակները կամ հրատարակիչները հեռու են հայկական տպարաններէ եւ միջոց չունին իրենց գործերը անձամբ սրբագրելու:

Հայ հեղինակները իրենց գործերուն տպագրութիւնը վստահելով Տպ. ՍԵՒԱՆԻՆ, կը տիրանան հետեւեալ առաւելութիւններու.

1·— ԱՆԹԵՐԻ ՍՐԲԱԳՐՈՒԹԻՒՆ
2·— ԺԱՄԱՆԱԿԻ ԽՆԱՅՈՂՈՒԹԻՒՆ
3·— ՏՊԱԳՐԱԿԱՆ ԲԱԶՄԱԹԻՒ ՏԱՌԱՏԵՍԱԿՆԵՐԷ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ
4·— ՆԻՒԹԱԿԱՆ ԿԱՐԵՒՈՐ ՇԱՀ
5·— ԳԵՂԵՑԻԿ ԵՒ ԱՐԱԳ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Արտասահմանի հայ հեղինակները ի նկատի ունենալու են որ Լիբանանի մէջ գիրքի մը տպագրութիւնը առնուազն կրկնապատիկ աժան է քան այլուր տպագրուածը:

Ցեառյ տպարան ՍԵՒԱՆը ունի — ՍԵՒԱՆ Հրատարակչական Տան Տէր եւ Տնօրէն Պ. Սիմոն Սիմոնեանի հսկողութեան տակ — մասնագէտ սրբագրիչներու խումբ մը, որ կրնայ բաւարարութիւն տալ ամէնէն բծախնդիր եւ դժուարահաճ հեղինակներուն:

Բազմաթիւ հեղինակներ իրենց գիրքերուն տպագրութիւնը արդէն վստահած են Տպ. ՍԵՒԱՆԻ:

Հայրենակցական Միութիւններ իրենց գաւառներուն պատմութեանց տպագրութիւնը յանձնած են Տպ. ՍԵՒԱՆԻ, ուր տպուած են եւ կը տպուին ՏԱՐՕՆԻ, ԹՈՄԱՐԶԱՅԻ և ՄԱԼԱԹԻՈՅ մեծահատոր պատմութիւնները: Հայագիտական եւ գրական մեծարժէք գործեր տպագրուած են եւ կը տպագրուին Տպ. ՍԵՒԱՆԻ մէջ:

Տպ. ՍԵՒԱՆԻ մէջ տպագրուած իւրաքանչիւր գիրք զերծ կը մնայ գրաշարական եւ նոյնիսկ հեղինակային բազմաթիւ սխալներէ:

Տպ. ՍԵՒԱՆԻ մէջ տպուած իւրաքանչիւր գիրք կրկնապէս որակաւոր կը դառնայ:

Հասցէ՝

S. SIMONIAN, B.P. 2669, Beyrouth, Liban, Tél. 37433



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

Տէր եւ Տիկին Վասիկ Յ. Տէր - Դաւթեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ռուբէն Տէր - Դաւթեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Պարտիզպանեան եւ զաւակները (Երեւան), Օր. Աննա Տէր - Դաւթեան (Թիֆլիզ), Տէր եւ Տիկին Արմէն Բար - սեղեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Տէր - Դաւթեան, Պարտիզպանեան, Համամճեան, Մահիլեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, քրոջ, մօրաքրոջ, հարսին եւ մօրաքրոջ աղջկան՝

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ - ԴԱՒԹԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 26-ին, իր բնակարանը:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Երեքշաբթի, ժամը 15.45ին, Շաւիլի եկեղեցիին մէջ: Արարողութեան կը նախագահէ կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆ: Հաւաքուիլ բնակարանը ժամը 15.30ին: 13 Րիւ Ալֆրէտ Ֆուրնիէ (Շաւիլ):

Ըստ հանգուցեալին փափաքին ոչ ծաղիկ, ոչ ծաղկեպսակ:

21, Bd. Montparnasse, Paris 6.

×

Հ. Յ. Դ. Շաւիլի «Արղութեան» խումբի ընկերները կ'ողբան «Արղութեան»ի հիմնադիր ընկերուհի՝

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ ԴԱՒԹԵԱՆԻ

մահը:

×

Ֆ. Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղի ընկերուհիները կ'ողբան մահը, մասնաճիւղի հիմնադիր եւ նախագահուհի՝

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ ԴԱՒԹԵԱՆԻ

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Վահրամ Վարդանոֆի մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Նիքոթեան փոխան ծաղկեպսակի երեսուն Ն. Ֆ. կը նուիրեն Աղքատախնամին: (Ստանալ Յառաջէն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի եկեղեցւոյ դիւանը ստացած է շնորհակալութեամբ իր կրթական ձեռնարկներուն համար հետեւեալ նուէրը, Պ. Կարապետ Գարակէօզեան յիսուն Ն. Ֆ. իր աղջկան Օր. Լիւսիի ամուսնութեան առթիւ:

Հ. Մ. Ը. Մ.ի
ՄԱՐՍԷՅԼԻ

Պարահանդէսը 4 Նոյեմբեր
Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս ԱԼՀԱՄՊՐԱՅԻ ՄԷՋ

Նուագախումբ ՌՕԺԷ ԿՈՄԷԶ

եւ զանազան անակնկալներ

Մութ գոյն զգեստը պարտաւորիչ է
Կանխաւ ապահովեցէք ձեր սեղանները: Հեռաձայն 20.71.10

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը
Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ:
Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին:

×

Հայ Կարմիր Խաչի Տարեկան Ցերեկոյթ պարահանդէսը, Կիրակի, Յունուար 28, ժամը 16 - 24, Ամպասատէօրի սրահին մէջ:

## ԾԱԽՈՒ Է

Ծախու է փավիյոն մը, հինգ սենեակ եւ առանձին աշխատանոց մը, երկու յարկի վրայ, կառատուն երկու կառքի համար, ամէն յարմարութիւն, հեռաձայն, կեդրոնական ջերուցում, խոհանոց, բաղնիք, եւն.:

Դիմել՝ ՏԱԼԵԱՆ,

72, Ave. Victor Hugo, Clamart (Seine) MIC. 40-46

Տրամադրելի է նաեւ մեծ քանակութեամբ քոնֆէքսիոնի դերձան, ամէն գոյն եւ պութոնիէռի Սինկէռ մեքենայ մը, (Սան ֆուփ - ֆիլ):

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

ԿԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ
ժամը 16էն 22
Սամուէլ Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ
ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ
Հանդէս
Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

ՃԱՀԱՆ
Ա
Հ
ՆԱՀԱՆՋԸ ԱՌԱՆՑ ԵՐԳԻ
Ո
Ւ
Ր

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋին

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ, Նոյեմբեր 4ին:
ՎԻԷՆԻ ՄԷՋ՝ Նոյեմբեր 5ին:

×

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝
ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ
Լիւթէսիայի մէջ:

×

Երկուշաբթի, 20 Նոյեմբեր, Սալ Շոփէն - Փլէյէլ, Սարգիս Պօղոսեան կը ներկայացնէ իր եօթներորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Միջ - նադարեան գանձեր»:

×

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 18ԻՆ
ԱԶԳ. ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի Մանասոր խումբի գրադարանը բաց է Երեքշաբթի օրերը, ժամը 9էն սկսեալ, Խրիմեան վարժարանը, 2 Րիւ տը լա Տէֆանս: Հայերէն եւ ֆրանսերէն ընտրուած գիրքեր:

ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՄԱՆՑ ԿԵԴՐՈՆ
ԽՄԲԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

Ֆրանսայի ամենահին եկեղեցւոյ

St. Germigny des Près
(Օրլէանի մօտ)

Որուն ճարտարապետը Հայ մը եղած է:

Որ շինարարն է նաեւ էքս լա Շափէլի հռչակաւոր գմբէթին:
Հանրակառքով երթուդարձ 10 Ն. Ֆ.

ԺԱՄԱԴՐԱՎԱՅՐ.— Ազգ. Տուն՝
32 Րիւ տը Թրէվիզ, մէթրօ Քատէ
Կիրակի, Նոյեմբեր 5, ժամը ճիշդ 8ին:
Կանխաւ ապահովել տեղերը մինչեւ Հոկտեմբեր 28ը:

ԴԻՄԵԼ.— Պ. Ադամեան,
53, Rue de Châteaudun TRI. 57-74
Պ. Դանիէլեան,
38, Rue des Châlons NAT. 42-50
Métro : Gare de Lyon

Centre d'Etudes Arméniennes
32 Rue de Trévise, Métro : Cadet
Ուրբաթ օրերը 18էն 21

Excursion en autocar à Germigny-des-Prés où se trouve la plus vieille Eglise de France dont l'architecte fut un Arménien.

## ԳԵՐԵԶՄԱՆԻ ԱՅՑ

Նոր Սերունդի Իսիի Մանասոր խումբը այց մը պիտի կատարէ այս Չորեքշաբթի առաւօտ ժամը 10ին, իրենց ընկերնէն ՓԻԷՐ ԵՍԱՅԵԱՆԻ

շիրիմին (մեռած Ալժերիոյ ճակատը):

Ժամադրավայր՝ 10ին, Խրիմեան դպրոցին առջեւ:

Ա. Զ. Դ.

Շաւիլի հոգաբարձութիւնը կը տեղեկացնէ թէ եկեղեցւոյ մնայուն երաժշտապետի պաշտօն տրուած է Պ. Նշան Սերոյեանի:

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 21ին Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Բ. Ը. Մ. Հայուհեաց մասնաճիւղին տարեկան պարահանդէսը՝ ԴԵԿՏԵՄԲԵՐ 16ԻՆ, ՇԱԲԱԹ:

×

Շաւիլի դպրոցին ի նպաստ տրուելիք պարահանդէսը Դեկտեմբեր 3ին, մանրամասնութիւնները յաջորդաբար:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբին:

Այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Րիւ տիւ Նուառի սրահին մէջ:

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ Տ. ՋԷՔԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, որուն կը մասնակցին.—

Օր. ԱՆԺԷԼ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ եւ Փարիզէն յատկապէս հրաւիրուած ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), դաշնակի ընկերակցութեամբ ծանօթ խմբավար ԿԱԱՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ:

## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ

ՏԱՐԵԿԱՆ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՎԱՃԱՌՔԸ

Շաբաթ, Դեկտեմբեր 2էն, Կիրակի, իրիկուն Դեկտեմբեր 10

Այս տարի, յաւելեալ նոր բաժին մը՝

ԶՈՒՏ ՀԱՅԿԱԿԱՆ

Ուր պիտի ներկայացուին հայ արուեստագէտներու զանազան գործերը:

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ | | |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ | | |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » | » | » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » | » | » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » | » | » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » | » | » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » | » | » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » | » | » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » | » | » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան: